**Թ. ՆԷՕԼՏԷՔԷ**

**TH. NÖLDEKE**



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍԱՍԱՆԵԱՆ ՏԷՐՈՒԹԵԱՆ



Ծանօթութիւններով և յաւելուածով

ԹԱՐԳՄԱՆԵՑ

**Ն. ՔԱՐԱՄԵԱՆ**





ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ ՍՐԲՈՅ ԷՋՄԻԱԾՆԻ

**1896**

ՀՐԱՄԱՆԱՒ

**Տ. Տ. ՄԿՐՏՉԻ**

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
## ՍԱՍԱՆԵԱՆ ՏԷՐՈՒԹԵԱՆ.[1]

Թ. ՆԷՕԼԴԷՔԷԻ.

Այն երկրներին, որոնց իշխաններն երբեմն իրապէս և երբեմն միայն անուանական կերպով պարթեւական «արքայից արքային» հպատակ էին, պատկանում էր նոյնպէս իսկական Պարսկաստանը կամ

1. Հայոց հարեւան ազգերից ոչ մէկի պատմութիւնն այնքան սերտ շաղկապուած չէ մեր պատմութեան հետ, որքան պարսիցը, իսկ պարսից պատմութիւնից մեծագոյն առնչութիւնն ունի հայկականի հետ Սասանեան շրջանի պատմութիւնը, որի ուսումնասիրութիւնն անհրաժեշտ է հայկական պատմութեան հետազօտութեան համար: Եւրոպական արեւելագէտներից առաջաւոր Ասիայի ազգերի քաղաքակրթութեան եւ լեզուների ուսումնասիրութեան մէջ՝ առաջին տեղն ունի այսօր Ստրասբուրգի համալսարանի ուսուցչապետ Թ. Նէօլդէքէն, որ եւ Բրիտանական հանրագիտական բառարանի մէջ գրել է պարսից Աքեմենեան եւ Սասանեան շրջանների պատմութիւնը: „Encyclopaedia Britannica“-ի յօդուածների գերմաներէն բնագիրը Նէօլդէքէն հրատարակեց 1887-ին „Aufsätze zur Persischen Geschichte“, որից թարգմանում ենք Սասանեան շրջանի պատմութիւնը: Ժամանակ է, որ հայոց պատմութեան ուսումնասիրութիւնը համապատասխանէ արդի գիտութեան պահանջներին, իսկ դրա համար պէտք է գոնէ մի մօտաւոր ծանօթութիւն Հայաստանի սահմանակից ազգերի պատմութեան: Մասամբ միայն այս պէտքը լրացնելու համար է ահա, որ ձեռնարկել ենք այս թարգմանութեանը: Ծանօթ. Թարգմանչի.

Պարսքը․ (Ֆարս, որի հին մայրաքաղաքն էր Պերսեպօլիս—Ստահր, իսկ այժմ Շիրազ)։ Արշակունիների շրջանում մեզ ծանօթ է այս երկրի թագաւորների մի քանիսի անունը, մասամբ մատենագիրներից, մասամբ էլ դրամներից, սակայն չգիտենք անգամ թէ դրանք ամէնքն արդեօք նոյն հարստութեա՞ն են պատկանում՝ թէ ոչ։ Երրորդ դարու սկզբներում, Քրիստոսից յետոյ, մեծ շփոթութիւն էր տիրում այդ երկրում։ Երկրի թագաւորների [1] ոյժը ընկուած էր․ ամենուրեք այս բնութիւնից սաստիկ ճեղքոտուած լեռնային աշխարհում կային մանր իշխաններ։ Այս իշխաններից մէկն էր Պապակ կամ Պաբակ [2] որդի կամ շառաւիղ Սասանի։ Պաբակը ծագում էր Շիր գիւղից, որ գտնուում է Շիրազից դէպի արեւելք եղած մեծ աղի լճի հարաւային ափում։ [3] Սա կարողացաւ

---

1․ Թագաւորական հարստութեան անունն երեւի Բազրանջիկ (Bazrangik) էր, թէպէտ եւ այս արտասանութիւնը միայն արաբական գրով է մեզ հասած, ուստի եւ անհաստատ է։

2․ Վերջինս նորագոյն կամ նոր պարսկական ձեւն է․ Բաբակ արաբական ձեւն է եւ ոչ պարսկական․ առհասարակ Սասանեան պատմութեան անուններիցը նորագոյն արտասանութեան ձեւերն եմ ընդունել, որ համապատասխանում են այդ շրջանի վախճանին յատուկ եղած ձեւերին։

3․ Սասանեան պատմութեան այս օրինակ աւանդութեան ապացոյցները կարելի է գտնել ըստ մեծի մասին այն ծանօթութիւնների եւ յաւելուածների մէջ, որ կցել եմ Թաբարիի արաբական տիեզերական պատմութեան մի մասի իմ թարգմանութեանս (Geschichte der Araber und Perser zur Zeit der Sâsâniden. Leyden 1879): Հռովմէական

այդ իշխանական տան վերջին շառաւիղին, որի անունն էր Գօզեր և որին ինքը առաջ ծառայել էր, գահավէժ անել և տիրել, նախ Ստահրի կամ հին Պերսեպոլսի շրջակայ երկրին: Սրա որդին դրամների և արձանագրութիւնների վրայ իւր հօրն արդէն «թագաւոր» տիտղոսն է տալիս: Ըստ աւանդութեան, որ անշուշտ այս մասի համար ստոյգ է, սրա օրինական ժառանգն էր իւր Շապուհ որդին, որի համար նա դեռ իւր կենդանութեան ժամանակ իբրև թէ Արշակունի մեծ արքայից թագաւորական թագ է խնդրել: Սակայն նրա միւս որդին Արտաշիր (Ardachîr)[1] իւր հօր մահուանից յետոյ չհպատակեց եղբօրն և դուրս եկաւ նրա դէմ. սակայն նոյն այդ միջոցին մեռաւ Շապուհը, երևի ոչ պատահաբար:[2] Որ Արտաշրի հարազատ եղբայրը մի խոչընդոտն էր նրա ճանապարհի վրայ և որ Արտաշիրը սպանել տուաւ նրան, ասում է մեզ Սասանեան խիստ օրինապահ աւանդութիւնը բոլորովին որոշ կերպով և այդ մասին մենք կասկածել անգամ չենք կարող:

Արտաշրի այն դրամները, որոնց երեսի վրայ

---

պատմութեան յարաբերութիւնների մասին պէտք է համեմատել Տիլլիմոնի (Histoire des Empereurs) եւ Կլինտընի (Fasti romani) իբրեւ հիմնաքար ծառայող գործերը:

1. Հայերէն ձեւն է Արտաշիր, որ երեւի աւելի ստոյգ է եւ համապատասխան պարսկական հին հնչման, որի աղաւաղման պատճառներից մէկն էլ արաբական գրութիւնն է եղած: ծան. թարգմ.:

2. Ինչպէս աւանդում են, նա Պերսեպոլսի աւերակներից վայր թափուած քարերի տակ մնալով սպանուել է:

Նրա դէմքի պատկերը կայ «Աստուած, Արքայ Արտաքշաթր» վերտառութեամբ և հակառակ կողմում նրա հօր կիսադիմի (en profil) պատկերն է «Որդի Աստուծոյ Պապակ արքայ» արձանագրութիւնով, ծագում են անշուշտ Պապակի մահուանից յետոյ։ Երբ Արտաշիրն այս դրամները կոխել էր տալիս, արդէն տէր էր իսկական Պարսք երկրի, թերևս նրա հայրն իսկ իւր իշխանութիւնը այդ տեղն էր հասցրել։ Աւանդութիւնը յիշում է մի քանի մանր իշխաններ, որոնց Արտաշիրն իւր հօր համար կամ իւր իշխանութեան ժամանակ նուաճել է։

Արտաշրով սկսւում է Սասանեան տէրութիւնը, ինչպէս որ Աքեմենեան տէրութիւնը սկսւում էր Կիւրոսով, որի նախորդներն իսկ արդէն «թագաւորներ» էին. այս իշխանի անունը Արտաքշաթր նոյն այն անունն է, որ յոյները Արտաքսերքսէս էին կոչում։ Ուշադրութեան արժանի է այն իրողութիւնը, որ հէնց այստեղ Աքեմենեանների հայրենիքում, որոնց մասին իսկական պարսիկ աւանդութիւնը ոչ մի յիշողութիւն չէ պահել, հին արքայական անունները գործածութեան մէջ էին, որովհետև նախասասանեան շրջանում մի քանի իշխաններ Արտաքսերքսէս և Դարեհ (Dârjâw, Dârâb, Dârâ) են կոչւում։ Արտաշրի երևան գալն իբրև թագաւոր մի բաւական հաւանական տեղեկութեան հիման վրայ պէտք է համարել **211—212** թ. Քրիստոսից յետոյ[1]։ Պարզ է որ

1. Տես Գուտշմիտ Zeit. d. deutschen morgenl. gesellschaft. 34. 734:

Արտաշիրը նախ յենուեցաւ հոգևորականութեան վերայ։ Զորաստրի հաւատը մակեդոնական և պարթևական շրջաններում երբէք ընկճուած չէր, ինչպէս շատերը կարծել են։ Իսկական Իրանում և մանաւանդ Պերսիս կամ Պարսք երկրում դա մնացել էր իբրև իսկական ժողովրդի կրօն։ Պարթև թագաւորներն էլ հետևող են եղել այդ կրօնին, բայց շատերն երևի ոչ մեծ ջերմեռանդութիւնով։ Արտաշիրն ընդ հակառակը հէնց սկզբում կրակապաշտութեան նշանն աչքի ընկնող կերպով դրօշմեց իւր դրամների վերայ և պատահած առթին, ինչպէս օրինակ իւր արձանագրութիւնների մէջ, խոստովանում էր ինքն իրեն իբրև «Մազդեզն», այսինքն՝ ուղղափառ Զորաստրեան· այդ բանի մէջ նորան հետևեցին իւր յաջորդները։ Այն մեծ ոյժը, որ ունէին այդ մասամբ խիստ մոլեռանդ և հալածասէր հոգևորականները Սասանեան տէրութեան մէջ, ըսկիզբն է առնում անշուշտ Արտաշրից։ Մինչև անգամ հաւանական է, որ նուիրապետական ստորակարգութիւնը, որ շատ նման է քրիստոնէական կղերի կազմակերպութեան, ծագումն է առնում նոյն իսկ Արտաշրից· գոնէ այս կազմակերպութեան գոյութեան մասին հէնց Արտաշրի անմիջական յաջորդների ժամանակ վկայում են արձանագրութիւնները։ Խիստ ուղղափառութիւնը յամենայն դէպս օգնել է այս հարստութեան ժողովրդական և սրբազան դառնալուն։ Սակայն Արտաշրի յաջողութիւնն անկասկած հետևանք էր նրա անձնական գործունէութեան

և արիութեան։ Որ Արտաշիրը դառն աշխատանք է թափել Պերսիսի իշխանից «Իրանի արքայից արքայ» դառնալու համար, այդ խոստովանում է և աւանդութիւնը։

Նա նախ նուաճեց իւր երկրի արևելակողմը գտնուած Կրման գաւառը, ապա Սուզիանան, յետոյ Տիգրիսի գետաբերանի շրջակայքի մանր թագաւորութիւնները։ Առաջին ընդդիմութիւնը ցոյց տուին նրան գլխաւորապէս տեղացի իշխանները և ոչ իւր մեծամեծներով և նախարարներով չափազանց սահմանափակուած պարթև թագաւորը։ Վերջապէս հասաւ և սրա հետ կռուելու ժամը։ Ժամանակակից պատմագիր Դիոն Կասիոսն աւանդում է՝ թէ Արտաշիրը պարթևներին յաղթեց երեք ճակատամարտներում։ վճռական ճակատամարտը պարթևական վերջին թագաւորի Արդաւանի օրով (Արտաբան, Արտաւան) տեղի ունեցաւ հաւանօրէն 244-ին ապրիլի 28-ին։ Այս ճակատամարտումն ընկաւ Արտաւանը։ Այդ օրուանից սկսուած Արտաշիրն ինքն իրեն «արքայից արքայ» կոչեց, որպէս հնագոյն ժամանակներից կոչւում էին առաջաւոր Ասիայի մեծ տէրութիւնների իշխողները։

Վճռական ճակատամարտը տեղի ունեցաւ բոլոր նշաններին նայելով՝ Բաբիլոնիայում կամ Սուզիանայում։ Սորան համաձայն է և Դիոն Կասիոսի աւանդածը, որով Արտաշրի առաջին ձեռնարկութիւնն այս ճակատամարտից յետոյ ուղղուած էր Միջագետքի անապատի մէջ գտնուած Հաթրայի դէմ։

ուր, բոլորովին մօտիկ պարթևական մայրաքաղաքին, մի փոքրիկ անկախ տէրութիւն էր կազմուել։ Հաթրայի պարիսպների առաջ, որոնց ամրութիւնն այսօր իսկ աւերակներից կարելի է ճանաչել, Արտաշրի թափն առաջին անգամ խորտակուեց. այսու ամենայնիւ նա ինքը կամ իւր յաջորդը քիչ ժամանակ դրանից յետոյ առան այդ ամրոցը և կործանեցին։ Նա յաջողութեամբ տիրեց Մարաստանին, ուր Արշակունիների չառաւիղից մէկը նրա ընդդէմ էր դուրս եկել, նոյնպէս և Իրանի բարձրաւանդակի մեծագոյն մասին, սակայն ոչ Հայաստանին, ուր ապաւինել էին Արտաւանի որդիքը։ 1

Հռովմայեցիք Արտաշրի զօրանալը կասկածանքով էին դիտում։ Արտաշրի նպատակն էր անշուշտ խլել Հռովմայեցիներից ինչքան կարելի է շատ մասըն նրանց ասիական երկրների։ Սկզբներում յաջող էր Արտաշրի գործը, բայց երբ Ալէքսանդր Սևերոսը նրա առաջ դուրս եկաւ, (233 թ.) նա ստիպուեց յետ քաշուել։ 2

1. Հայկական պատմութեան մէջ ոչինչ յիշատակութիւն չը կայ Արտաւանի որդոց Հայաստան փախչելու մասին, եթէ Անակի կեղծեալ փախուստը չը համարենք այս իրողութեան յեղաշրջումը։ Հայկական աւանդութիւնով Հայաստանին տիրել է նոյն ինքն Արտաշիրը, որին համառակ է սակայն արտաքին պատմութիւնը։ Հայոց պատմութեան եւ ժամանակագրութեան ամենից խառնաշփոթ մասը Խոսրովի եւ Տրդատի թագաւորութիւնների շրջանն է, չընայելով, որ այդ շրջանի պատմութեան աղբիւրները համեմատաբար աւելի շատ են եւ ժամանակով մերձաւոր։ Ծան. Թարգմ.

2. Տես մանաւանդ Lampridius. Alex. Sev. 56. որ

*Հէնց սկզբից Հռովմի հետ յարաբերութիւնը որոշում է Սասանեան տէրութեան պատմութեան ընթացքը։ Երկու կողմերը յաճախ խաղաղութեան դաշն են կապում միմեանց հետ, սակայն միմեանց միշտ հակառակորդներ են համարում, այն էլ հզօր հակառակորդներ։ Արի իշխանների ներքոյ և ներքին քիչ շատ տանելի հանգամանքներում Հռովմը (և Բիւզանդիան) կարողանում է եւրոպացիների հին գերակշռութիւնն ասիացիների վրայ պահպանել, սակայն յաճախ հանգամանքներն այլ կերպ են տնօրինում և Հռովմի անունը խայտառակութեան են մատնում պարսիկները. այսու ամենայնիւ քաղաքակրթական ազդեցութիւնը մտաւորապէս եւս շատ*

---

*վաւերաթղթեր է վկայութեան կոչում (որոնց բառացի ընագիրները յիրաւի նրա յառաջ բերած ձեւով իսկական չեն կարող լինել) եւ Սինկելլոս* 557. D. *Արդէն Տիլլէմոնը այն կարծիքի էր, որ Հռովմայեցիք են յաղթել. Համմտ.* Jos. Krebs-*ի փոքրիկ շարադրութիւնը.* De Severi Alexandri bello contra Persas gesto (Düsseldorf 1847), *որ դրամների վերտառութիւններ էլ վկայութիւն է կոչում։ Այսպէս է ընդունում եւ Կլինտոնը։ Օսրոյենացոց (Ուռհայեցոց) զնդերի հաւատարմութիւնը Ալ. Սեւերոսին նրանով է բացատրում, որ կայսրն ազատել էր նրանց երկիրը պարսիկներից* (Capitolinus, Maximinus c. 11). *Սխալ քննադատութեան հետեւանք է երբ նորերը Օրինակ՝ Գ. Ռաուլընսըն եւ Ծպիգելը ճարտարախօս Հերովդեանին են հետեւում, որ մի բոլորովին վիպական եւ աշխարհագրական տեսակետով անհեթեթ զեկուցումն է տալիս, որի համաձայն պարսից թագաւորն իբրեւ թէ յաղթել է։ Նոյն ինքն Մոմզէնը չափազանց հաւատ է ընծայում սրան։*

բարձր կանգնած արեւմուտքի այս ժամանակամիջոցում շատ մեծ էր պարսիկների վրայ, թէ տէրութեան և թէ զօրքի կազմակերպութեան, թէ արուեստների և թէ արհեստների մէջ։

Տէրութեան մայրաքաղաք տեսականապէս մնաց դարձեալ Ստահրը, ինչպէս երբեմն Պերսեպոլիսը։ Այնտեղ էր արքունի տան կրակատունը, ուր և ի միջի այլոց կախ էին արած յաղթուած օտար թագաւորների գլուխները։ Բայց իսկական մայրաքաղաք մնացին Տիզբոնը, Արշակունիների մայրաքաղաքը, և միայն Տիգրիսով նրանից բաժանուած, Արտաշրի ձեռքով նոր հիմնարկուած Սելեկիան, որ նա կոչել էր Վեհ-Արտաշիր։ Այն հարուստ երկիրն, ուր այս երկորեակ քաղաքները շինուած էին, ոչ աշխարհագրական և ոչ ազգագրական տեսակէտով այլ ևս Իրանին չէր պատկանում, որովհետև դա գլխաւորաբար սեմական ցեղին պատկանող ժողովուրդներով բնակեցրած մի հարթութիւն էր, ուր որ տէրութեան կենդրոնը փոխադրելու առիթ էր տուել նախկին թագաւորութիւնների օրինակը, ինչպէս և հըռովմէական երկրների մերձաւորութիւնը։ Թէ Արտաշիրն իւր կեանքի վախճանում ի՞նչ երկրների էր տիրում, ստոյգը յայտնի չէ։ Պարսից ազգային աւանդութիւնը չափազանցութեան մէջ է ընկնում, այնպիսի երկրների տիրապետութիւնը յատկացնելով նրան, որ նուաճուած են նրա յաջորդների ժամանակ միայն, և կամ երբէք Սասանեան տէրութեան չեն պատկանել։ Նրա որդի Շապուհը արձանագը-

րութիւնների մէջ իրեն կոչում է «Արքայից արքայ Իրանի և Ան-Իրանի», իսկ իւր հօրը լոկ «Արքայից արքայ Իրանի»—դրանից պէտք է հետևացնել, որ Շապուհը առաջին անգամ տէրութեան սահմանները տարածեց այն երկրիցը դուրս, որ իւր ժամանակը Իրան էր կոչուում. այս կարող է վերաբերել Հայաստանին, ինչպէս և արևելքի հեռաւոր երկրներին, ուր սակայն Սասանեան իշխանութիւնը երբէք այնքան հեռու չէ տարածուել, որքան Աքեմենեանը։ Յամենայն դէպս Արտաշիրը մի մեծ տէրութիւն էր նուաճել և զանազան երկիրներ այնպէս շաղկապել, որ 400 տարի սերտ կապուած մնացին միմեանց հետ։ Նա քանդեց ինչքան կարողացաւ աւատական իշխանութիւնների սիստեմը, որ պարթևական տէրութեան մէջ հետզհետէ կազմակերպուել էր, և դորանց փոխարկեց գաւառների։ Ուստի անիրաւացի չէ պարսկական այն աւանդութիւնը, որ Արտաշիրին համարում է Իրանի միութեան վերականգնող։ [1]

1. Պէտք չէ սակայն կարծել, որ պարսիկները որ եւ է պարզ յիշողութիւն են ունեցել Աքեմենեան տէրութեան զօրութեան եւ մեծութեան մասին։ Եւրոպացի մատենագիրները, որ Աքեմենեան տէրութեան մասին գիտէին դասական գրականութիւնից, իրենց կարծիքներն այդ ժամանակուայ պարսիկների բերանն են դնում. Հարկաւ Սասանեաններից մէկը կամ միւսը լսած կլինէր յոյներից կամ ասորիներից որ եւ է բան այդ մասին, ինչպէս իրենց նախնիքը երբեմն մինչեւ Կ. Պոլիս իշխել են, բայց սա մի կենդանի աւանդութիւն չէր արեւելքում։ Կրթուած արեւմուտքից ընդհա-

Իհարկէ այս միութիւնը չը պէտք է համարել մի այնպիսի միութիւն, որպիսին կայ այժմեան Նորագոյն-եւրոպական տէրութիւնների մէջ։ Յատկապէս մեծ նախարարները դեռ եւս բաւական ոյժ ունէին և շատ անգամ թագաւորների համար վտանգաւոր դարձան։ Հին պարթեւական ազնուականութիւնը դեռ եւս մնաց։ Դա բաժանուում էր մի քանի դասակարգերի, որոնցից գլխաւորներն են ինչպէս Աքեմենեանց ժամանակներում՝ եօթն նշանաւոր ցեղերը։ Բացի դրանցից կար և մի բազմաթիւ մանր կալուածատէր գիւղական ազնուականութեան դասակարգ։

Արտաշիրն իբրև հիմնադիր տէրութեան յետագայ սերնդի մէջ համարուած է ինչպէս ամենալաւ օրէնսդիրն և նախատիպը լաւ թագաւորի. որ մոգակրօնութեան պաշտպանը մի շատ բարեպաշտ մարդ էր համարուում, այդ ինքն ըստ ինքեան հասկանալի է։ Յետագայ ժամանակներում նրան վերագրել են մինչև անգամ իմաստութեամբ և առաքինութեամբ լի գործեր։ Անշուշտ Արտաշիրը մի շատ նշանաւոր մարդ էր, սակայն այն իշխանը, որ իւր

---

կատակն խառնումեն երբեմն, իրաւ է, հին տէրութեան հանգամանքներն իրենց ժամանակակից հանգամանքների հետ եւ մեծ գիտնական Լիբանիուսը կարծում է, օրինակ, որ Շօշը իւր ժամանակակից Շապուհի մայրաքաղաքն է, որովհետեւ նա դպրոցում սովորել էր, որ դա է Քսերքսէսի եւ Արտաքսերքսի մայրաքաղաքը:

Սասանեանները սակայն իրենց համարում էին յաջորդներ եւ շառաւիղներ Իրանի առասպելական նախնի թագաւորների.

գործունէութիւնը սկսել է եղբայրասպանութեամբ և որի մասին գոնէ աւանդութիւնն այն վայրենութիւնն է պատմում, որ նա մեռած մեծ արքայ Արտաւանի գլուխը ոտների տակ կոխոտել է՛, կարող է ամենայն ինչ լինել, բայց ոչ առաքինութեան տիպար։

Հետաքրքրական է, որ պարսկական այս երկրորդ տէրութեան հիմնադրի մասին ևս նոյնպիսի զարմանահրաշ և վիպական աւանդութիւն է կազմուել, ինչպէս և Կիւրոսի։ Այսպէս՝ սա էլ իբրև թէ մի ստոր ծագման մարդու որդի է եղել և Արտաւանի տանը ծառայ, ինչպէս Կիւրոսը Աժդահակի տանն էր։ Երազներն և նախագուշակութիւնները երկուսի վերաբերութեամբ էլ մեծ դեր են խաղում։ Մինչև անգամ զուտ առասպելաբանութիւններ են պատմում, որ իբրև նա մի վիշապի հետ կռուել է։ ¹ Բարեբախտաբար իսկական աւանդութիւնն աւելի պատմական է։

Այն տեղեկութիւնը, որով Արտաշիրը իւր Շապուհ որդուն վերջին ժամանակներում գահակից է արել իրեն, հաստատում է մասամբ այնու, որ դրամ-

---

1. Մի համառօտ քաղուածք Արտաշրի միպասանական պատմութիւնից մեզ է հասել ընագրի լեզուով (Պահլաւիկ)․ տես այդ հատուածի իմ թարգմանութիւնս („Geschichte des Artachsir i Papakan“) արտատպութիւն „Beiträge zur Kunde der Indogermanischen Sprachen“ 4. Bd. Göttingen 1879)։ Նոյն նիւթը մշակել է եւ Ֆիրդուզին իւր Շահնամէի մէջ։ Համմտ․ Gutschmid, in Zeitschr. d. DMG. 585 ff.

ներ են գտնուած, որո՛նց վերայ Արտաշրի պատկերի հետ միասին կայ և մի երիտասարդի գլխի պատկեր։ Նա մեռել է 241 Թ. վերջը կամ 242 Թուի սկիզբին։

Շապուր (հնագոյն ձևն է Շահպուհր. արևմըտեայք անուանում են Սապոր կամ Սապորէս) Ա-ը հաւանականօրէն հանդիսով Թագաւոր պսակուեցաւ 242 Թ. մարտի 20-ին։ Այն առասպելական աւանդութիւնը, որի համաձայն սրա մայրն իբրև Թէ մի արշակունի իշխանուհի է եղել, որին Արտաշիրը Տիզբոնի առման ժամանակ իրեն կին էր առել, հակասում է այն հաւանական ստոյգ համբաւին, որի համաձայն Շապուհը պէտք է Արտաւանի ընդդէմ մղած վճռական ճակատամարտի մէջ քաջագործութիւններ արած լինի։ Նոյնպէս և հազիւ Թէ մի 13—14 տարեկան տղայ Հռովմի դէմ այնպէս բուռն կերպով պատերազմի ձեռնարկէր։ Արդէն Արտաշիրը իւր տէրութեան վերջին տարիներում (Մաքսիմին կայսեր ժամանակ՝ 236 Թ. փետրուարից մինչև մօտաւորապէս 238 մայիս) կռիւը նորից սկսել էր և Մծբինը (Nisibis) ու Խառանը (Karrä) առել էր. այս երկու բերդերի պատճառով շատ անգամ ճակատներ են մղուել Սասանեան շրջանում։ Շապուհը 242 Թ. մինչև Անտիոք առաջ էր անցել։ Ահա ընդառաջ դուրս եկաւ՝ Գորդիանոս Գ. կայսրը, Նըրան և կամ ճիշդ ասելով որի Տիմէսիթևս աները Շապուհին հետ մղեց և յետ առաւ Միջագետքի այդ երկու ամրոցները։

Սա պարսիկներին ջարդեց Ռէշ—Այնայի մօտ և կա-

մենում էր արդէն պարսկական մայրաքաղաքների վերայ արշաւել։ Սրա համար նա ընտրեց Եփրատի ճանապարհը ինչպէս յետոյ Յուլիանոսը։ Սակայն մերձաւորապէս երկու տէրութիւնների սահմանի վերայ Խաբորաս գետի Եփրատի մէջ թափուելու տեղիցը մի փոքր դէպի ներքև, Գորդիանոսին սպանեց իւր թիկնապահների հրամանատարը Փիլիպպոս Արաբացին (244 թ-ի սկզբներին)։ Կայսրասպանն իրեն կայսր հրատարակել տուաւ և շուտով մի խայտառակ դաշն կապեց Շապուհի հետ, որով նա Հայաստանն ու Միջագետքը Շապուհին պէտք է թողած լինի։ [1]

Իրաւ մի քանի տարի պատերազմները դադարած են երևում, սակայն 251—52-ին Շապուհը նորից է արշաւում։ Այդ միջոցին իսկապէս նա տիրապետում է Հայաստանին, որին մինչև այդ ժամանակ չէր կարողացել տիրել և ստիպում է այդ երկրի թագաւորին, հռովմէական տէրութեան սահմաններն ապաստանելու։ Միմեանց հակասող և հատուկտոր տեղեկութիւններից դժուար է իմանալ, թէ այդ միջոցում պարսիկները քանի՞ անգամ արդեօք Ասորիք են մտել։ Այս բանը հնարաւոր էր այդ միջոցներին հռովմէական տէրութեան սարսափելի խախուտ վիճակի պատճառով։ Մինչև անգամ

1. Մանրամասնութիւնները մութն են։ Ընդհասարակ այս հռովմա-պարսկական պատերազմների մասին Գ-րդ դարումը քիչ տեղեկութիւններ ունինք։

մի ասորի Կիւրիադէս անունով, պարսիկներին ինքն էր առաջնորդել Անտիոք և նրանց պաշտպանու-թեան տակ կայսեր տիտղոս էր առել։ Վերջապէս Վալերիանոս կայսրն արշաւեց պարսիկների ընդդէմ։ Պատերազմը մի առ ժամանակ երկարեց Միջագետ-քում. վերջապէս հռովմայեցւոց գործերը շատ ան-յաջող գնացին և տեղի ունեցաւ մեծագոյն խայ-տառակութիւնը, և կայսրն անձամբ, երևի Եդեսիայի մերձակայքում, Շապուհի ձեռքը գերի ընկաւ (260 թ.)։ Թէ ի՛նչ հանգամանքներում պատահե-ցաւ այս, անյայտ է մեզ։ Ցամենայն դէպս նախա-պէս բանակցութիւններ են տեղի ունեցել, որի ըն-թացքում Վալերիանոսն աշխատել է իւր զօրքի և իւր համար ազատութիւն գնել. բայց իզուր։ Հռով-մայեցիք սրա պատճառ են համարում դաւաճանու-թիւնը կամ դաշինքի խախտելը։

Վալերիանոսի գերի ընկնելուց յետոյ Շա-պուհն առաջ անցաւ մինչև Փ. Ասիայի խորքերը. ահա այդտեղ նա զօրաւոր դիմադրութեան հան-դիպեց։ Հռովմայեցի զօրավար Բալլիստան շատ պար-սիկ ջարդեց, բայց ամենածանր հարուածը թագա-ւորն ստացաւ մի Հռովմէական արևելցուց։ Օդէնա-թոսը, որ իշխան էր ասորական անապատի մէջ գտնը-ւած մեծ վաճառաշահ Պալմիրա քաղաքի, նախ Շապուհին դաշնակցութիւն էր առաջարկել, որ Շապուհը արհամարհանօք մերժել էր։ Այս բանը բոլորովին հնարաւոր էր այդ միջոցին, որովհետև, թէպէտև Պալմիրան հռովմայեցւոց կայսրութեան

էր պատկանում, բայց այն միջոցին, երբ կայսրը գերի էր և Հռովմի իշխանութիւնը արևելքում կոտրուած էր համարուում, կարող էր մի փառասէր արևելցի միտք յղանալ արքայից արքայի դաշնակցութիւնով անկախութեան հասնելու և ինքնուրոյն դեր խաղալու։ Ինչպէս էլ կուզէ թող լինի՝ տեղագրութեան և հանգամանքներին ծանօթ Օդէնաթոսը յարաբերութեան մէջ մտաւ Բալլիստայի հետ, յարձակուեց վերադարձող պարսիկների վերան և մի կատարեալ յաղթութիւն տարաւ նրանց վերայ։ Մինչև անգամ արքունի կանանոցի մի մասն ընկաւ նրա ձեռքը։ Նոյն իսկ Տիզբոնը մէկ թէ երկու անգամ պաշարեց։—Հաւանօրէն այս տեղ նոյնը տեղի ունեցաւ, ինչ որ յետոյ ևս. պարսկական տէրութիւնն երկարատև արշաւանքների ծախքը չէր կարողանում հոգալ։

Այս արևելեան տէրութիւնները չնայելով իրենց գաւառների բնական հարստութեան, և արքունի գանձարաններում դիզուած հարստութեան, այնու ամենայնիւ աշխարհագրական և պատմական պատճառների շնորհիւ ընդհանրապէս աղքատ են։ Մի մեծ և մշտական բանակ չունէին պարսիկները հռովմայեցւոց պէս. ժողովրդից հաւաքած ամբոխը պէտք է կրկին յետ տարուէր։

Ահա թէ ի՞նչու համար բազմաթիւ յաղթական արշաւանքները մնում էին առանց տևական հետևանքի։ Չի երևում, որ Շապուհը տևական տիրապետութիւններ արած լինի, մինչև անգամ Հա-

յաստանը ինչպես երևում է այդ միջոցներին կրկին անգամ Հռովմայեցւոց գերիշխանութեան տակ էր մտել։ Վալերիանոսը սակայն մնաց Շապուհի ձեռքին և իբրև գերի մեռաւ։ Դեռ ևս ցոյց են տալիս մեզ բարձրաքանդակ արձանները Պերսիս Նահանգի ժայռերի վրայ քանդակուած, թերևս նոյն իսկ հռովմէական հպատակների ձեռքով, յաղթական արքայից արքային և գերի կայսեր։ Այս դէպքը յիշում է մինչև անգամ պարսկական աւանդութիւնը, որ առհասարակ Արտաշրի անմիջական յաջորդների մասին շատ քիչ պատմական բան գիտէ։ Մի քանի բանի, որ այդ աւանդութիւնը Շապուհ Ա-ին է վերագրում, վերաբերում է իսկապէս Շապուհ Բ-ին։

Այս թագաւորը մեծամեծ շինութիւններ էլ է կանգնել։ Իրաւացի կերպով սորան են վերագրում այն մեծ ջրանցքները Սուզիանայում Շուշտերի մօտ, որոնք ոռոգում են այդ երկիրը և նրան այնքան պտղաբեր դարձնում։ Նոյն այդ երկրում նա հիմնել է Գունդեւ—Շապուր (Արաբերէն՝ Ջունդայի—Սաբուր, ասորերէն՝ Բէթ—Լապատ)՝ քաղաքը, որ երբեմն իբրև արքայանիստ նոյն դերն է խաղացել, ինչ որ Աքեմենեանց ժամանակը դրան մերձակայ Շօշը, որ Բաբելոնից յետոյ երկրորդ քաղաքըն էր, ինչպէս որ սա Տիզբոնից յետոյ երկրորդն էր։ Որ Շապուհը ոչ—Իրանեան երկրների ևս տիրել

1. Zeitsch. d. deutsch. morgenl. Ges. 31, 51. Գութշմիդի այս յօդուածը պէտք է առհասարակ աչքի առաջ ունենալ Պարսկա Հայկական յարաբերութիւնների համար։

էր, այդ վերևում յիշեցինք։ [1] Իրաւամբ սակայն կայսերաց պատմագիրները (Scriptores historiae Augustæ) Բակտրիացիներին համարում են այդ ժամանակ անկախ և յաճախ պարսիկներին թշնամի մի ազգ։ Նոյնը վերաբերում է և «Կադուզիացիներին», (Pollio, Valerianus 1) այսինքն այժմեան Գիլանի Դիլամացի կոչուած լեռնական ցեղերը, որոնց Սասանեանները երբէք չընուաճեցին։

Շապուհի տէրութեան հէնց սկզբներում երևան եկաւ Մանին, Մանիքէութեան հիմնադիրը, որ դաւանական տեսակէտով Գնոստիկեաններից ամենից հետևողականը և պատմական ամենից նշանաւոր աղանդն էր։ Այս հոգեպաշտ աղանդաւորների դէմ պարսիկ մոգերը երկար դարեր նոյնչափ եռանդով մաքառեցին, որչափ զուտ քրիստոնէական դաւանութիւնների ընդդէմ։

Շապուհի վերջին օրերին մեծ յեղափոխութիւն տեղի ունեցաւ հռովմէական արևելքի գործերի մէջ։ Օդէնաթի այրուն, Զենոբիային ինչպէս երևում է Շապուհը Աւրելիանոս կայսեր ընդդէմ աջակցեց, սակայն ոչ տոկուն կերպով։ Երբ կայսրը Պալմիրան առաւ 273 թ. և Հռովմի իշխանութիւնը կրկին այդ երկրներում կանգնեց, երևի արդէն Շապուհը մեռած էր։

Շապուհի որդի Որմիզդ (Հորմիզդ, Օրհմազդ) Ա. սկսաւ կառավարել 272 թուի վախճանին կամ 273-ի սկզբին։ Արդէն իբրև թագաժառանգ արիու-

---

1. Տես Եղիշէ 1893 Վենետ. յեղ. Բ. եր. 81. .... զժամանակն Շապհոյ արքայից արքայի, որ էր հայր հաւուն քո Յազկերտի. եւ ետ նմա Աստուած զերկիրն Հայոց.... Միակ ստոյգ վկայութիւնը Սասանեանց Հայաստանին տիրելու մասին:
Ծ. Թարգմ.

թեամբ կռուել էր հռովմայեցւոց ընդդէմ և աւանդութիւնը նրան տուել էր «դէ-յաղն» անունը։ Զանազան առասպելների հետ միասին աւանդում են նրա մասին և այն, որ գահը բարձրանալուց առաջ կուսակալ է եղել Խորասանում (ամբողջ հիւսիս—արևելեան գաւառներում)։ Ինչպէս թագաւոր մեծամեծ գործեր կատարելու համար հազիւ կարող էր նա աւխթ ունենալ, որովհետև միայն մի տարի թագաւորեց։

Որմիզդին յաջորդեց Բահրամ (Վարահրան—Վռամ). Ա. որ նրա որդին չէր, ինչպէս ասում է աւանդութիւնը, այլ համաձայն մի արձանագրութեան՝ եղբայրը։ Նա պէտք է մի մեղկ, զուարճասէր թագաւոր եղած լինի։ Մանին սիրտ առաւ նրան մօտենալու, բայց զրադաշտական հոգևորականները կամ մոգերը կարողացան վճիռ կայացնել տալ նրան սպանել և մորթեզերծ անելուց յետոյ նրա խրտուիլակը կախ անել տալու։ Սա կառավարեց մօտաւորապէս 274—277 թ.[1]

Բահրամ Բ-ի (մերձաւորապէս 277—294 թ.) մասին որ Բահրամ Ա-ի որդին է, պարսկական աւանդութիւնը գրեթէ ոչինչ չը գիտէ։ Հաւանօրէն սրանից են ծագում այն երկու, դժբաղդաբար շատ վնասուած, ժայռերի արձանագրութիւնները,

---

1. Բահրամ Ա-ից մինչեւ Շապուհ Բ-ի գահ բարձրանալը թագաւորների կառավարութեան տարիները չեն կարող առանձնապէս ստոյգ համարուիլ: Երկու տարուան սխալ այդ տարեթուերի մէջ միշտ կարելի է ենթադրել:

որ բոլորովին կրօնական, մինչև անգամ քարոզանման բովանդակութիւն և խիստ կղերական ոգի ունէին: — Պրոբոս (276—282) կայսրը սորա հետ մի անգամ խաղաղութեան դաշն է կապել,[1] որից նախընթաց պատերազմների մասին մենք տեղեկութիւն չունինք: Նախ քան որ Պրոբոսը կարողանար պատերազմը վերսկսել սրա հետ, սպանուեցաւ: Բայց Կարոս կայսրը առաջ տարաւ Պրոբոսի դիտաւորութիւնը (283 թ.), առաջ անցաւ մինչև թշնամի տէրութեան մայրաքաղաքը, առաւ Տիզբոնը, և Քոխէն (Սելևկիայի մի մասը). այս նուագ պարսիկներին օգնեց կայսեր յանկարծական մահը, որ մեռաւ իբրև թէ կայծակի հարուածից: Սրանից յետոյ ինչպէս երևում է հռովմայեցիք առանց մեծ կռիւների յետ են դարձել: Յատկապէս յիշատակուում է, որ Կարոսի յաջողութիւններին նպաստեցին պարսիկների ներքին վէճերը: Այս շրջանն առանձնապէս հարուստ էր այսպիսի վէճերով. սակայն մենք այս մասին տեղեկութիւններ չունինք: Մի հռետոր յիշատակում է 291 թ. իշխան Որմզդի (Ormies) ապստամբութիւնն իւր եղբօր դէմ բարբարոս ազգերի աջակցութիւնով:

Այն պատանի որդին, որի պատկերը Բահրամ Բ-ը իւր դրամների վրայ իւր ամուսնու դիմացը դրօշմել է տուել, երևի երբէք կառավարութեան չէ

---

1 Vopiscus, Probus, 17. Որ „Narseus“ անունը Վոպիսկոսը խառնել է Բահրամի հետ, արդէն Տիլլէմոննէ դիտել:

հասել։ Նրա մահուանից յետոյ հաւանօրէն երկու հակառակորդներ կռւում էին գահի համար, ԲԱՀ-ՐԱՄ Գ-ը, որ երեւի Որմիզդի որդին էր և ՆԱՐՍԵ-ՀԸ, որ մի արձանագրութեան նայելով Շապուհ Ա-ի որդին էր։ Ցամենայն դէպս Բահրամ Գ-ը, որ արդէն իբրև թագաժառանգ կուսակալ էր Սագաստանի (այժմ Սիստան), տէրութեան հարաւ արևելեան կողմում, ուստի և կոչւում էր ՍԱԳԱՆ-ՇԱՀ, «Սակեյի թագաւոր», շատ կարճ ժամանակ միայն իշխեց, կամ գոնէ կարճ ժամանակ տիրեց մայրաքաղաքին։

Ներսեհն իշխում էր մօտաւորապէս 293—303 թիւը։ Նա կրկին Շապուհի ճանապարհը բռնեց և գրաւեց Հայաստանը։ Գալերիոս Կեսարը դուրս եկաւ նրա առաջ (երեւի 297-ին), սակայն Միջագետքում Խառանի և Կալլինիկոսի (Ռաքա) մէջ տեղում ջարդուեցաւ։ Բայց Դիոկղետիանոսի իմաստուն ղեկավարութեամբ Գալերիոսը կրկին հռովմէական զէնքի պատիւը վերականգնեց։ Նա Ներսեհին Հայաստանում բոլորովին ջարդեց և գերի բռնեց նրա կանանցն ու որդոցը։ Խաղաղութեան դաշնադրութիւնը, որի մասին մենք մի քիչ ստոյգ տեղեկութիւն ունինք, փառաւոր արդիւնքներ տուաւ. Պարսկաստանը հրաժարուեց Հայաստանից, Միջագետքից ու մինչև իսկ մի քանի գաւառներից Տիգրիսի ձախ ափին մինչև Քրդաստան։ Իւր ընտանիքը գերութիւնից ազատելու համար, թագաւորը սիրով հրաժարուեց այդ երկրներից։ Այս խաղաղութիւնը (298 թ.) տեւեց 40 տարի։

Նարսեհին յաջորդեց իւր որդի Որմիզդ Բ-ը (մերձաւորապէս 303-ին)։ Սրա թագաւորութեան մասին ոչինչ յայտնի չէ։

Սրա մահուանից յետոյ (310 սկզբին) գահ բարձրացաւ իւր որդի Ատրներսեհը (Ադհարնարսեհ), սակայն, իբր թէ անգթութեան պատճառով, կարճ ժամանակից յետոյ գահավէժ եղաւ և երևի սպանուեցաւ։ Մեծամեծները, որոնց ձեռքին էր ոյժը, Ներսեհի մի ուրիշ (անունն անյայտ) որդուն կառավարելու անընդունակ դարձրին աչքերը կուրացնելով և երրորդ որդուն՝ Որմզդին բանտը դրին։ Նրանք թագաւոր անուանեցին դեռ ևս չծնուած կամ թէ նոր ծնուած Իփրա (?)—Որմիզդ թագուհու որդուն։ Այս ամենը կատարուեցաւ 310 թուի ընթացքում։ Մանուկ արքայն կոչուում էր Շապուհ Բ.

Թէ ի՞նչ վիճակի մէջ էր տէրութիւնը Շապուհի մօր և մեծամեծների կառավարութեան ժամանակ՝ դիւրին է երևակայել։ Բայց մանուկը շուտով մի այնպիսի այր մարդ դարձաւ, որ կարող էր միայն կառավարել։ Սա Սասանեան հարստութեան ամենանշանաւոր թագաւորներից մէկն է։ Դեռ ևս մինչև նրա տղայութիւնից դուրս գալը բանտարկուած Որմիզդը փախաւ հռովմայեցիների մօտ (323 թ.), ուր նա մինչև իւր վախճանը մնաց, որպէսզի դեռ 363-ին հռովմայեցիների հետ միացած՝ իւր խորթ եղբայր

1. Այս ժամանակից սկսած թուականները կրկին ստոյգ են։

Շապուհի դէմ պատերազմէ։ Պարսկական աւանդութիւնը, որ շատ քիչ պատմական բան գիտէ Շապուհ Բ-ի մասին, խօսում է նրա արկածներով լի արշաւանքների մասին ընդդէմ արաբացոց, որոնք Շապուհի մանկութեան ժամանակ պարսից տէրութեան սահմանները շատ տեղերում կոխել էին և աւերել։ Այս արշաւանքների պատմութիւնները, ոչ զուրկ արաբատեաց դիտաւորութիւնից, [1] շատ չափազանցացրած են, բայց անշուշտ Շապուհը պէտք է իրեն նպատակ դրած լինի աւազակաբարոյ Բէդուիններին քաղաքակիրթ երկրի սահմաններից հեռու պահելու, մի գործ, որ շատ լուրջ նշանակութիւն ունի անապատներին սահմանակից երկրների համար։ Շապուհի քաղաքաշինութիւնների մասին աւանդուածներից նշանաւոր է վաղեմի Շօշ քաղաքի նորոգութեան համբաւը։ Այս քաղաքի բնակիչներն ապստամբեցին նրա դէմ. նա ջարդել տուաւ նրանց, քաղաքը փղերին ոտնատակ տալ տուաւ և ապա նորից վերաշինեց։ Նիշապուհը (իսկապէս Նիւ-Շապուհը) մինչև միջին դարերի վախճանը յայտնի իբրև արևելքի մեծ քաղաքը կամ սա է հիմնել կամ Շապուհ Ա-ը։

Շապուհի մանկութեան ժամանակ հռովմէա-

---

1. Այն պարսիկները, որոնք յետին ժամանակներում, Իսլամի տիրապետութեան օրով, «Թագաւորների գիրքը» (Շահ-Նամէ) մշակել են, իրենց ատելութիւնը դէպի արաբացիներն արտայայտել են տեղ տեղ աւանդութեան մէջ չարամիտ փոփոխութիւններ մտցնելով։

կան տէրութեան մէջ աՀագին փոփոխութիւն էր տեղի ունեցել այնու, որ Կոստանդինը քրիստոնէութեան օգնել էր յաղթանակելու Հեթանոսութեան վերայ։ Պարսից տէրութեան քրիստոնեաններն խուկոյն Հռովմը սկսան Համարել իսկական քրիստոնէական տէրութիւն, և անմիջապէս այն կողմը դարձրին իրանց Համակրութիւնը։ Երբ Շապուհը պատերազմ սկսաւ Հռովմայեցիների դէմ (366 կամ 338թ.), սրանք իրենց այդ սէրն սկսան Համարձակ ցոյց տալ։ Գոնէ այդ ժամանակում՝ գրուած քարոզները Ափրաատէսի, որ մի ասորի եպիսկոպոս էր պարսից տէրութեան մէջ, այդ մասին բոլորովին պարզ լեզու է բանեցնում։[2] Դրա վրայ աւելացաւ և այն, որ մայրաքաղաքի եպիսկոպոս Սիմոնը Թագաւորի ընդդէմ այնպիսի կշտամբանքներ արձակեց, որ ոչ մի արևելեան իշխանի դուր չէին կարող գալ, ուր մնաց թէ մի այնպիսի եռանդուն, երիտասարդ իշխանի, ինչպիսին Շապուհ Բ-ն էր։ Այսու ընդՀարման առիթը տուած էր և աՀա սկսաւ գրեթէ Հռովմէական պատերազմի Հետ միաժամանակ քրիստոնէութեան սասկալի Հալածանքը (սկսած 339—40)։ Ասորի վկայաբանութիւններն այդ ժամանակից մի կենդանի պատկեր են տալիս ժամանակակից դիպուածների, ինչպէս առՀասարակ բաւական լուսաբանում են տէրութեան Հանգամանքներն և ծանօթացնում գոր-

2. Տես Wright-ի Հրատ. 79 ff. Համմ. Sasse, Prolegg. in Aphraatis sermones (Lipsiae 1878) երես 11.

ծող անձանց հետ։ [1] Թագաւորին դրդողը կրօնական մոլեռանդութիւնը չէր։ Հրէաներին, որոնց մոգերը նոյնչափ ատում էին, որչափ և քրիստոնեաներին, նա հանգիստ թողեց։ Մինչև իսկ վկայաբանութիւնների մէջ նա քանիցս երևում է զուտ կրօնական խնդիրներում իբրև ոչ նախապաշարուած մարդ։ Բայց նա, ինչպէս երբեմն Դիոկղետիանոսը, կամենում էր տէրութեան միջից տէրութիւնը, եկեղեցու կազմակերպութիւնը վերացնել։ Ուստի նա բարձրագոյն և նոյն իսկ ստորին հոգևորականութեան ընդդէմ խըստագոյն միջոցներ ձեռք առաւ և քանդեց, աւերեց եկեղեցական շէնքերը։ Եկեղեցական համայնքները ոչնչացնելու համար ստիպում էր յաճախ դրանց նշանաւոր անդամներին, որ իրենց սեփական հոգևորականների՛ն քարկոծեն։ Հարկաւ պարսիկ մոգերը այս բարեյաջող հանգամանքից սիրով օգտուեցան իրենց կրօնական ատելութեան յագուրդ տալու համար, բացի դրանից ստոր կրքերը Թագաւորի հալածանքն աւելի սարսափելի դարձրին։ Քրիստոնեաներն այդ ժամանակ շատ դիւցազնական ոգի ցոյց տուին, սակայն շատ էլ փոքրոգութիւն երևան եկաւ։

---

1. Տես Acta martyrum orientalium ed. Steph. Evod. Assemani (Bomae 1748): Զանազան պարսկական քրիստոնէութեան հալածանքների մասին համեմատիր Georg Hoffmann, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer (Leipzig 1880), այս գրքի մէջ բացի դրանից շատ նշանաւոր տեղեկութիւններ կան Սասանեան ժամանակի մասին։

Ցամենայն դէպս այս անցքերը քննադատելու ժամանակ պէտք է զգուշանալ միակողմանի լինելուց։

Հռովմայեցիների ասելուն նայելով պատերազմը սկսան պարսիկները Միջագետք արշաւելով։ Կոստանդինը մեռաւ և չկարողացաւ նրանց ընդդէմ դուրս գալ (22-ին մայիսի 337 թ.)։ Պարսից թագաւորի պատերազմի մեծ պատրաստութիւնները տեսնուեցան այն տարուան մէջ, որ համապատասխան է 337 թ. աշնանը։ 1 Այս քսանհնգամեայ, տարուբերուող և երկարատև ընդհատումներով շարունակուող, պատերազմի առաջին և մեծագոյն բաժնի մասին, մենք շատ սակաւ տեղեկութիւններ ունինք, մինչդեռ երկրորդ բաժնին ժամանակակիցների, մինչև իսկ ականատեսների շնորհիւ լաւ, մասամբ իսկ շատ լաւ տեղեակ ենք։ Թագաւորը կամենում էր հռովմայեցիներից խլել Տիգրիսի վերին բաժնի կալուածները, ուր հռովմէական իշխանութիւնը Տիզբոնի մերձաւորութեան պատճառաւ պարսիկներին շատ անյարմար էր։

Ամենից առաջ յարձակումն ուղղուած էր Մըծբին ամուր բերդի վրայ։ Արդ կամենում էր նա Հայաստանը, այդ հին կռուածաղիկ արևելեան և արևմտեան մեծ դժուարութիւններ, մէջն կրկին իր իշխանութեան տակ նուաճել։ Նա երեք անգամ խստութեամբ ապարդիւն կերպով պաշարեց Մծբինը (338, 346

---

1. Տես վերոյիշեալ Ափրաատի քարոզները համեմատութեամբ Թուականութեան. երես 440։

և 350 թուականներին)։ Բացի դրանից այս պատերազմի ընթացքում պաշարումները մեծ դեր են խաղում։ Եթէ Շապուհին չը յաջողուեց մեծամեծ արդիւնքներ ձեռք բերել երկար ժամանակով, այդ ամենևին Կոնստանդիոս կայսեր շնորքը չէր, որ ամեն անգամ երբ անձամբ հրամանատարութիւն էր անում, յաղթուում էր, ինչպէս օրինակ Սինգարայի (Շինգար, արաբերէն Սինջար, 348 թ.) նշանաւոր գիշերային ճակատամարտի մէջ։ Գլխաւոր պատճառն այն էր, որ Դիոկղետիանոս և Կոստանդին մեծ կայսրները բերդերը լաւ ամրացրել էին և առհասարակ իրենց վտանգի ենթակայ սահմանագլխների պաշտպանութեան համար մեծ հոգացողութիւն էին արել։ Արդէն իսկ մեծ յաջողութիւն էր, որ պարսիկները, մինչև անգամ եթէ յաղթում էլ էին, չէին կարողանում արևմտեան Միջագետք մըտնել։ Բացի սրանից արքայից արքաների զինուորական ոյժերը բաւական չէին առնուած բերդերը գրաւած պահելու համար։ Այսպէս հռովմայեցիք 360 թուին Ամիդա (Համիթ) քաղաքը, որին մի տարի առաջ մեծամեծ զոհաբերութեամբ, երկար պաշարումից յետոյ, պարսիկները տիրել էին, առանց բերդապահների գտան։ Դարձեալ շատ ձեռնտու էր հռովմայեցիների համար, որ արքայից արքան միաժամանակ զանազան վայրենի ազգերի հետ կռուելու էր ստիպուած։ Մըծբնի երրորդ պաշարումը գրեթէ վախճանին էր հասցըրել, որ յանկարծ ստիպուեց Խորասան արշաւել, ուր իւր ներկայութիւնն անհրաժեշտ էր։ Ա-

րևելեան կողմ՝ պատերազմները երկար զինադադար յառաջ բերին (350—358), որ երբեմն միայն փոքրիկ ասպատակութիւններով էր ընդհատւում։ Սակայն երբ հռովմայեցիք բանագնացութիւններ սկսան (356—358), Շապուհն արդէն արևելեան թշնամիների հետ խաղաղութեան դաշն էր կապել և բոլորովին անընդունելի պայմաններ դրաւ։ Պատերազմը 359 և 360 թուականներին կրկին ազդու կերպով շարունակուեց, Շապուհը տիրեց մի քանի նշանաւոր ամրոցների։ Կրկին մի առ ժամանակ խաղաղութիւն տիրեց։ Բայց 363-ին պատերազմի եղանակը կրկին բոլորովին փոխուեց։ Պատերազմի մէջ փորձուած և փառասէր Յուլիանոսը, որ այժմ արդէն միայնակ կայսր էր, վճռեց Տրայանոսի, Սեպտեմիոս Սևերոսի և Կարոսի օրինակին հետևելով, ուղղակի թշնամու մայրաքաղաքի վրայ արշաւել։ Նա դուրս եկաւ Անտիոքից 5-ին մարտի, արշաւեց նախ դէպի Միջագետք և արագութեամբ անցաւ Եփրատի ընթացքով դէպի վայր։ Նա աւերեց պարսկական երկիրը կրակով և սրով, մի քանի քաղաք առաւ կարճ պաշարումներից յետոյ, դրանց թւում Մահոզ Մալքա, Տիզբոնին մօտիկ արքունի քաղաքներից մէկը։ Սիլևկիա ևս եկաւ նա. այդտեղ ահա տեսաւ, որ կարող չէ առնել ամուր Տիզբոնն միւս Տիգրիսի ափին. ուստի յետս նահանջեց գետի ձախ ափով։ Արդ սկսան Շապուհի գնդերն իրենց յարձակումներըն և նեղը ձգեցին Յուլիանոսին։ Այսու ամենայնիւ նա անշուշտ իւր բանակն առանց մեծամեծ կո-

րատի հռովմէական սահմանը կը հասցնէր, բայց ահա (26-ին յունիսի 363) մի ճակատամարտի մէջ մահացու վէրք ստացաւ: Նրա մահուանից յետոյ զօրքից կայսր ընտրուած Յովիանոսը (Jovian) այդ դժուար վիճակին յարմար անձն չէր, նա պատերազմն ու բանակցութիւններն այնպէս վարեց, որ վերջապէս մի խայտառակ խաղաղութեան դաշն կնքուեց: Շապուհն իր վտանգաւոր թշնամու մահուանից յետոյ ցոյց տուաւ այնքան ճարպիկութիւն, որքան և չափաւորութիւն: Նա ձեռք բերաւ Գալերիոսի Տիգրիսի ձախ ափին վաստակած երկիրն և Միջագետքի մի մասը, Մծբինով և Սինգարայով: Մեծ դժուարութեամբ միայն յաջողեցաւ հռովմայեցոց պայմանի մէջ մտցնելու, որ այս քաղաքների բնակիչներին իրաւունք տրուի ազատօրէն հեռանալու: Ամենից վատն էր Մծբինից հրաժարուելն: Այս բերդը յաջորդ պատերազմների ժամանակ միշտ պարսից յենակէտն է եղել թէ յարձակման ժամանակ ու թէ պաշտպանուելուս, բայց աւելի եւս խայտառակ բան քան այդ երկրներից հրաժարուելն էր այն պայմանը, որի զօրութեամբ Հռոմ այլեւս Հայոց Արշակ թագաւորին, որ իրենց կողմն էր անցել, պէտք էր այլեւս չը պաշտպանէին այլ Շապուհին յանձնէին: Սակայն Հայաստանին տիրելը արքայից արքային այնքան էլ դիւրին չեղաւ: Թէպէտև նա Արշակին իր ձեռքն անցկացրեց, բայց այդու չը տիրեց այդ բազմաթիւ բնական մասերի բաժանուած աշխարհին իւր բազմաթիւ, գրեթէ անկախ նախարարներով, և աւելի ևս ապակա

տէր եղաւ այդ երկրին երկար ժամանակով։ Հայաստանում քրիստոնեաներն աւելի հռովմայեցոց կողմն էին պահում, իսկ դեռ բաւական թւով մնացած զորաստրեանները (կրակապաշտները) պարսիկների կողմը, դրա վրայ աւելանում էր նաև երկրի մեծ նախարարների փոփոխական անձնական շահերը, որոնք աւելի սիրով ոչ մի տէր իրենց գլխին չէին կամենում ճանաչել։

Հռովմայեցիք օգնեցին նախ գաղտնի և ապա բացարձակ իրենց ապաստանած Պապին, Արշակի որդուն, սակայն միայն նրան իբրև գործիք բանեցնելու համար, որպէս զի Հայաստանն ուղղակի մի հռովմէական գաւառ դառնայ։ Վրաստանումն ևս (Իբերիա, որ Հայաստանից դէպի հիւսիս է գտնւում) երկու տէրութեանց կողմնակիցների մէջ կռիւ ընկաւ։

Հինգ տարուց յետոյ կրկին պատերազմական վիճակ էր. 371 ին պարսից արքայն Հայաստանում բացարձակ կռիւ պիտի մղէր հռոմէական գնդերի դէմ։ Երկու կողմերն էլ կամենում էին այդ երկիրըն ուժով և խորամանկութեամբ նուաճել։ Բայց, քանիցս էլ բանագնացութիւններն անյաջողութեամբ էին վերջանում, այնու ամենայնիւ արտաքին հանգամանքները (հռովմայեցոց համար Գոթերի արշաւանքը) և բանաւոր կշռադատումները թոյլ չէին տալիս որ ընդհանուր պատերազմ բացուի։

Շապուհ Բ, որին յետագայ աւանդութիւնն իրաւացի կերպիւ իբրև զօրաւոր թագաւոր է դրուատում, մեռաւ 379 թ. ամառուան վերջին։

Նրան յաջորդեց իւր եղբայր *Արտաշիր* Բ.։ Թերևս այս ծերունու գահ բարձրանալու համար ևս այնպիսի պատճառներ կային, ինչպիսի պատճառներով մի ժամանակ Շապուհ կամենկեր մանուկը թագաւոր պըսակուեցաւ։ Իբրև արքայազն կուսակալ Ադիաբենէի (հին Ասորեստանի մի բաժնի) Արտաշիրն (արդէն 344-ին և դեռ 376-ին) մեծապէս մասնակցել էր քրիստոնէութիւնը ճնշելու գործին։ Սակայն սրա գահ ամբառնալուց յետոյ քրիստոնէից հալածանքը դադարեց. գուցէ որոշ դիտմամբ և կամ թերևս իսկ սովորական արևելեան ծուլութեան պատճառով։ Նոյն իսկ մայրաքաղաքում կարող էր կրկին մի եպիսկոպոս նստել։ Երբ սակայն Արտաշիրը մեծամեծների հետ սկսաւ բռնութեամբ վարուիլ և նրանցից մի քանիսին սպանեց, այն ժամանակ մեծամեծները նրան գահավէժ արին (383-ին կամ 384-ին)։

Սրա յաջորդը *Շապուհ* Գ., Շապուհ Բ-ի որդին, գահ բարձրանալուն պէս դեսպաններ ուղարկեց Կ. Պօլիս, ուր նրանք մի հաստատուն խաղաղութեան դաշն կռեցին (384)։ Սա կարճ ժամանակ թագաւորեց, որովհետև արդէն 388 կամ 389-ին մեծամեծներից սպանուեցաւ։

Սրա յաջորդը և որդին (թերևս եղբայրը) *Բահրամ* Դ., որի մականունն է Կրմանշահ, «Կըր-

1. Տես. Ղ. Փարպեցի Դր. Ա. ԺԲ. եր. 49. Ցետ այսորիկ մեռեալ Շապուհ արքայ պարսից, եւ թագաւորեաց Վռամ որդի նորա որ էր Կրման արքայ։ Ծ. Թ.

մանի Թագաւոր», որովհետև իբրև գահաժառանգ Կրմանի կառավարիչ էր եղել, հռովմայեցւոց հետ բարեկամութիւն պահպանեց և քրիստոնեաների հետ գթասրտութեամբ վարուեց։ Հռովմէացիք եւ պարսիկնե-րը 290-ին բաժանեցին իրենց մէջ Հայաստանն այնպէս, որ մեծագոյն բաժինը պարսկական եւ փոքրագոյնը յունական հարկատու տէրութիւններ դարձան։ Այս բաժանումից յե-տոյ դեռ շատ շփոթութիւններ են տեղի ունեցել, սակայն բաժանումս տեւել է մինչեւ արաբական ժամանակը։ Բահրամ Դ. ևս բռնի մահով է մեռել, ինչպէս աւանդութիւնն ասում է «չարագործները» նրան նե-տահար սպանեցին (ամառը 399-ին)։

Սրա յաջորդը Յազկերտ (Iezdegerd = Եզդիգերդ) Ա. որդի Շապուհ Բ.-ի կամ Շապուհ Գ.-ի, Թը-ւում է թէ արդէն Բահրամ Դ.-ի ժամանակ Թա-գաժառանգ պէտք է նշանակուած լինէր կամ թէ չէ՝ որ և է իշխանական պատուի արժանացած, որով-հետև սրա անունը Բահրամի դրամների վրայ և նրա անուան հետ միասին է պատահում։ Պարսկական աւանդութիւնը Յազկերտին թէպէտ և մեծ խելք է վերագրում, բայց շատ վատ բնաւորութիւն։ Սա-կայն դրա փոխարէն քրիստոնեայ վկաներն աւելի նպաստաւոր դատաստան են անում նրա վրայ։ Ստոյգ պիտի համարուի անշուշտ, որ նա «մեղաւոր» մա-կանունն ստացել է այն պատճառով, որ մեծամեծնե-րի հետ խստութեամբ, գուցէ նոյն իսկ բռնութեամբ էր վարւում և մոգերին չէր սիրում, իսկ ընդհա-կառակն քրիստոնէից վերաբերութեամբ շատ համ-բերատար էր։

Քրիստոնեաներն համարձակութիւն ունեցան նոյն իսկ մայրաքաղաքում մի ժողով գումարելու (410) և կատարելապէս կազմակերպուելու։ Թագաւորը գործ դրաւ այս եկեղեցու պետին, որ «կաթողիկոս» տիտղոսն ունէր և եկեղեցական տեսակէտով բոլորովին անկախ [1] մի իշխանաւոր էր, ոչ միայն իբրև դեսպան կայսեր մօտ ուղարկելու համար, այլ նաև միջնորդ այն երկպառակութիւնը բառնալու, որ տեղի էր ունեցել իւր և իւր եղբօր մէջ, որ կառավարիչ էր Պերսիս նահանգի։ Սակայն այս պատճառաւ միայն նա դեռ քրիստոնեայ չէր և ամենևին չը վարանեց իսկ, երբ Սուզիանայի եպիսկոպոս Աբդան կոյր եռանդով զորաաստրեան տաճարների վրայ ձեռք մեկնեց, խիստ պատիժներ նշանակելու։ Բայց հէնց այն համբերատարութիւնը քրիստոնէից վերաբերութեամբ գրգռեց պարսիկ մոգերի ատելութիւնը։ Այն հանգամանքն ևս, որ նա լուրջ կերպիւ մտադիր էր Հռովմի հետ խաղաղութեամբ ապրելու, պատերազմասէր աւագանուն շատ էլ դուր չէր գալ։ Մի խա-

---

1. Պարսից թագաւորները հարկաւ թոյլ չէին տալիս այնպիսի եկեղեցական կազմակերպութիւն, որի գլխապետը արտասահմանում էր ապրում։ Այդ ժամանակի վերաբերութեամբ ի հարկէ չէ կարող խօսք լինել, որ Հռովմը կամ Կ. Պոլիսը ամբողջ երկրիս վրայ գերագոյն եկեղեցական իշխանութիւն ունեցած լինին։ Ծան. Հեղ.

Անշուշտ Սահակ Պարթեւից սկսած հայ կաթուղիկոսների Կեսարիա ձեռնադրութեան չը գնալու պատճառներից մէկն էլ այս էր։ Ծան. Թ.

ղաղութեան և բարեկամութեան դաշն կռեց Հը-ռովմայեցոց հետ 408-ի ամառը, որով նա, ինչպէս թուում է, Թէոդոս Բ. անչափահաս կայսեր կառավարութեան համար կատարեալ երաշխաւորութիւն յանձն առաւ։

Պարսկական Հայաստանին նա մի վստահելի աւատական թագաւոր տուաւ յանձին իւր որդի Շապուհի։ Մենք ամենայն կերպիւ իրաւունք ունինք սրան իւր ժամանակի և երկրի հանգամանքներին նայելով մի բանիբուն իշխան համարելու։ Բայց նա հաճելի չեղաւ պարսից Աստուծուն, որ նրան հեռաւոր Վրկանում (Հիւրկանիա) հրաշքով յանկարծամահ արաւ։ Մենք այդ հրաշքը իսկապէս ամենապարզ կերպիւ ենք բացատրում, որ նա իշխանաւորների ձեռքով սպանուել է (հաւանօրէն 420-ի ամառուան վերջին). ոչ ապաքէն սրա նախորդներից երեքն էլ բռնի մահով էին զրկուել իշխանութիւնից և երկուսն յատկապէս սպանուել։

Յազկերտի մահուանից յետոյ նրա որդի Շապուհը շտապում է Հայաստանից դէպի մայրաքաղաքը, անշուշտ իւր հօր փոխանակ թագաւորելու համար, սակայն սպանուում է մեծամեծներից։ Որովհետև դրանք Յազկերտի ընդդէմ այնպէս զայրացած էին, որ վճռեցին նրա որդոցը զրկել գահակալութիւնից և թագաւորացրին մէկ հեռաւոր ազգականի, որի անունն էր Խոսրով։ Սակայն Յազկերտի մի այլ որդին, Բահրամ (Վռամ) անունով գահակալութեան համար կռիւ սկսաւ նրա դէմ։ Սա

իւր հօր կենդանութեան միջոցին ապրում էր մի հզօր աւատական թագաւորի, Հիրայի (Եփրատից դէպի արեւմուտք, անապատի եզերքին) արաբական թագաւոր Ալ Մունդերի (Alamundaras) մօտ, հաւանօրէն իբրեւ պատանդ: Մունդիրը օժանդակեց սրան գահակալութեան ամենայն ուժով թեկնածութիւնը: Այդ ժամանակ երեւի առաջին անգամ արաբներն ազդու կերպով միջամտեցին պարսից գործերին: Բազմաթիւ արաբ ջոկիրներով Մունդիրը կանգ առաւ Հիրայից չորս օրուան ճանապարհ հեռու մայրաքաղաքի դռների առաջ և անշուշտ օրինական գահաժառանգը կարող էր յոյս դնել նաև մի պարսկական կուսակցութեան վրայ: Ուստի և պայմանադրութեամբ վերջացաւ գործը: Խոսրովը հրաժարուեց, Բահրամը գահ բարձրացաւ, սակայն խոստումն արաւ այլ կերպ կառավարելու, քան թէ իւր հայրը, և մեծամեծներին ու մոգերին կամակատար լինելու:

Բահրամ (Վռամ) Ե., որի մականունն է «Գօր» «Ցիռ» (իշավայր, վայրի էշ), պարսկական աւանդութեան սիրելին է, որի մասին մինչև իսկ շատ առասպելախառն բաներ են պատմուած: Նա երիտասարդ էր, երբ թագաւորեց, մինչև իւր կեանքի վերջը մնաց զուարճասէր և կանանց խիստ անձնատուր: Նրա մարմնական ահագին ուժն, մեծ սէրը դէպի որսի արկածներն, գուցէ և անձնական քաջասրտութիւնն խաբեց ամենին և չը տեսան, որ նա իսկապէս մի թոյլ իշխան էր: Երկու բան միանգամից

քաղաքականութեան փոխուելը ցոյց տուին, քրիստոնէից մի կանոնաւոր Հալածանքի և Հռովմի Հետ պատերազմի ծագումն։ Երկու կողմերն էլ կռիւ սկսելու պատճառներ դիւրաւ կարող էին գտնել. Հաւանօրէն սակայն պարսիկ աւագանին էր Թագաւորին այդ բանին դրդողը։ Միմիայն քրիստոնեաների Հալածանքի պատճառով Հռովմայեցիք անշուշտ պատերազմ չէին սկսիլ։ Կռուի ասպարէզներն էին գլխաւորապէս պարսկական Միջագետքն և Հիւսիսից դրան սաՀմանակից լեռնային երկիրն։ Պարսից զօրավարն էր ՄիՀր ՆերսէՀն, ամենազօրաւոր մեծամեծներից մէկը։ Դրա մասին պարսկական փառաբանիչ աւանդութիւնն ասում է, որ յաղթական մուտք է գործել Կ. Պօլիս, մինչդեռ սակայն մենք գիտենք, որ նա կռուի Հէնց սկզբում մի ծանր պարտութիւն է կրել (421-ի օգոստոսին)։ Հռովմայեցիք պաշարեցին Մծբինը, բայց նոր զօրաբանակների մերձենալուն պէս ստիպուեցան շտապով թողնել պաշարումն։ Մունդիրը, որին ԲաՀրամն իւր գաՀն էր պարտական, կամենում էր իւր արաբացիներով Ասորիքն աւիրել, սակայն ստիպուում է մեծ կորստով յետ քաշուել։ Այս պատերազմը, որի ընթացքը մեզ լաւ յայտնի չէ, երկու կողմն էլ այնպէս թուլացրեց, որ շուտով կամեցան վերջ տալ դրան։ Խաղաղութեան դաշինքի (422-ին) մէջ պարսիկները խոստացան քըրիստոնեաներին կրօնի ազատութիւն շնորՀել, ինչպէս և Հռովմայեցիք զրադաշտականներին։ Հռովմէացիք պարտաւորուեցան արաբացիներին չնդունելու,

որոնք պարսիկ արքայի գերիշխանութիւնը կայսեր գերիշխանութեան հետ փոխել կը կամենային։ [1] Այլևս որոշուեցաւ, որ հռովմէացիք պարսիկներին կրկին տարեկան մի որոշ գումար վճարեն կովկասեան դռների (Դարիէլի անցքի) ամրութիւնների պահպանութեան համար, որով երկու տէրութիւններն ևս պաշտպանուում էին հիւսիսի վայրենի ազգերի ասպատակութիւններից։ Այս պայմանը, որ գրեթէ բոլոր խաղաղութեան դաշնագրութիւնների մէջ կրկնուում է, անընդհատ կռուի առիթ էր տալիս։ Ինչպէս էլ պատճառաբանութիւններն և պայմանագրութեան բառերի դարձուածներն ընտրէին, այնու ամենայնիւ այդ բանը երկու կողմն էլ իբրև հարկատուութիւն էր համարում և հռովմէացիք պիտի աշխատէին կարողացածներին պէս շուտով ազատուել մի այդպիսի խայտառակութիւնից։ Տիրապետած երկրների փոփոխութիւններ ինչպէս երևում է չէ որոշուել այս դաշինքի մէջ։

Պարսիկների խաղաղութեան պատրաստակամութիւնը գուցէ ամենից աւելի նրանից էր յառաջացել, որ մի անգամ էլ այն ժամանակ Բակտրիոյ և դրացի երկրների տիրապետողների, Քուշանաց ազգի,

1. Այն բեդուին ցեղերն են, որոնց մասին Ամմիանոսն ասում է. „Nec amici nobis unquam nec hostes optandi“ (Ammianus 14, 4, 1) եւ դրանցից կազմուած փոքրիկ տէրութիւնները հռովմէական եւ պարսկական գերիշխանութեան ներքոյ երկու կողմերի համար էլ անսպառ շփոթութիւնների աղբիւր էին թէ խաղաղութեան եւ թէ պատերազմների միջոցին։

Հայթալ (Հեփթաղների) կամ «սպիտակ Հոնաց» հետ պատերազմ վարելու ստիպուած էին։ 1

Անշուշտ սրանց դէմ վարած անընդհատ պատերազմների շնորհիւ պիտի լինի գլխաւորաբար, որ հռովմէացիք պարսից կողմից հանգստութիւն վայելեցին հինգերորդ դարում։ Պարսիկների հաղորդածը՝ որ իբրև թէ Բահրամը Հեփթաղներին փառաւոր կերպիւ ջարդել է, մեզ համար դեռ ևս զուտ ճշմարտութիւն չէ։

Հռովմէական պատերազմների միջոցին պարսկական Հայաստանում անկախութեան ձգտումներ էին յայտնուել, բայց խաղաղութեան դաշնադրութիւններից յետոյ Բահրամը կարողացաւ այնտեղ կրկին մի հպատակ թագաւոր նշանակել։ Իրենց անձնական շահերը գերադասող հայ նախարարները գործն այն տեղն հասցրին, որ պարսիկները վերջապէս որ հայկական թագաւորութիւնը բոլորովին ջնջեցին, և երկիրը մի գաւառ դարձրին (429-ին)։ 2 ինչպէս որ հռովմէացիք այդ վաղուց արել էին իրենց բաժնի վերաբերութեամբ։ Այս գործը կատարեցին պարսիկները օգնութեամբ հայկական մի մեծ կու-

---

1. Համեմատիր Եղիշէ. Վենետ. 1893. յեղ. Ա. երես, 21. յեղ. Բ. եր. 33 Այստեղ «յերկիրն իտալական (այլ օր. թետալական). Իտալական=Հայթալական. Hephthalit = Հեփթաղ տես Ղազար Փ. Վենետիկ 1873, դրուագ Գ. եր. 446. 47 |. 473. 491. 309. ծան. Թ.

2. Հայ նախարարների անարգ վարման եւ Ս. Սահակ Պարթեւի մեծ հայրենասիրութեան նկարագիրը տես Ղազար Փ. դրուագ. Ա. Գլ. ԺԳ. եր. 59։ ծան. Թ.

սակցութեան։ Հարկաւ այսուհետեւ պարսիկ մարզպաններն հայ նախարարների ու եկեղեցականների հետ նոյնչափ մեծ դժուարութիւններ էին քաշում, որչափ և հայ թագաւորները։

Բահրամի մահուանից յետոյ (438 կամ 439-ին) թագաւորեց նրա որդի Յազկերտ Բ. Սա հալածեց թէ՛ քրիստոնեաներին և թէ՛ հրէաներին։ Առ հասարակ էլ հազիւ թէ սա որ և է գովելու արժանիք ունեցած լինի։ Սա ոչնչացրեց իւրաքանչիւր ամսուան առաջին օրուան ընդունելութիւնը, որոնց միջոցին ամէն մի նշանաւոր մարդ գանգատներ և աղերսներ կարող էր թագաւորին յայտնել։ Պատմում են, որ սա իւր աղջիկը կնութեան է առել այդ ինքն ըստ ինքեան յանցանք չէր զրադաշտական մի անձի համար, որոնց մէջ հէնց այսպիսի ամուսնութիւններն իսկ վարձատրութեան արժանի էին համարուում—բայց ապա սպանել է տուել։—Սրա թագաւորութեան հէնց սկզբում քիչ էր մնացել որ մի հռովմէական պատերազմ ծագէր (441-ին)։ Սահմանագլխում արդէն սկսուել էր ապստամբութիւնն ու աւարառութիւնը, բայց մինչև երկու բանակների ընդհարումը խաղաղութեան դաշն կապուեցաւ։ Այդ դաշինքում վճռուեցաւ, ինչպէս ապաքէն էր նախնի և յետագայ դաշինքներում, որ երկու տէրութիւններից ոչ մէկն էլ իրաւունք չունենայ նոր ամրութիւններ կառուցանելու սահմանագլխներում։—Յազկերտը ստիպուած էր մեծ կռիւ վարելու Հեփթաղների ընդդէմ։ Սրանք քան

մի անգամ ջարդեցին Յազկերտի զօրքը։ Սա ինքն այդ իսկ պատճառով երկար ժամանակ Խորասանում մնալ ստիպուեցաւ։

Հայոց մի մեծ ապստամբութիւն ևս, որ գըլխաւորաբար իւր և ծերունի Միհր Ներսեհի քրիստոնէից դէմ տածած ատելութիւնից էր ծագել, շատ զբաղեցրեց նրան (450 և 451)։[1] Պարսիկների և պարսկական կուսակցութեան Հայաստանում մեծամեծ ճիգերի շնորհիւ միայն հնար եղաւ արքայից արքայի իշխանութիւնը վերականգնելու և այդ էլ քրիստոնէական կրօնին կատարեալ ազատութիւն շնորհելով միայն։

Յազկերտ Բ.-ի մահուանից (457-ին) անմիջապէս յետոյ, ինչպէս երևում է, երկպառակութիւն է ընկնում նրա երկու որդոց մէջ, Սագաստանի Որմիզդ Գ. Թագաւորի (այսինքն՝ «արքայորդի-կուսակալի») և Փերոզի, որոնք երկուսն էլ Դինակ անունով նոյն մօրից էին։[1]

Որմիզդը, Յազկերտի աւագ որդին, մի առ ժա-

---

1. Վարդանանց կամ առաջին կրօնական պատերազմն է ակնարկուած: ծան. թ.

1. Պատահաբար պահուած է այս կնոջ պատկերը մի գոհարի (Gemme) վրայ, տես B. Dorn, „Versuch einer Erklärung der auf einer Gemme im Besitz des Grafen S. Strogonov befindlichen Pehlevy—Inschrift (compte—rendu de la commission Imp. arch. pour 1878 et 1879, 162 ff).

մանակ դէմ դրաւ իր եղբօրը, բայց Հեփթաղների օժանդակութեամբ և Միհրանեան աւագագոյն տոհմից Ռահամի ջանքով երկու տարուց յետոյ քշեց նրան Պերոզը։[1] Պերոզը՝ բացի իւր եղբօրից ըսպանել տուաւ իւր մերձաւորագոյն ազգականներից երեք ուրիշին ևս։ Սա էլ քրիստոնեաների և հրէաների թշնամի էր։ Սակայն այնքան քաղաքական հասկացողութիւն ունէր, որ պաշտպանութիւն ցոյց տուաւ հռովմէական տէրութիւնից իբրև հերետիկոսներից (հերետիկոս հալածուած Նեստորի վարդապետութեան և նպաստեց, որ իւր քրիստոնեայ հպատակներն յարին այդ աղանդին։ Պարսից տէրութեան հին քրիստոնէական եկեղեցին 483 ին կամ 484 ին Բէթ Լապատի ժողովում ընդունեց Նեստորական հաւատամքը և դրանով բաժանուեցաւ հռովմէական քրիստոնեաներից մի մեծ անդունդով, ուստի և տէրութեան համար աւելի սակաւ վտանգաւոր դարձաւ, քան թէ առաջուց էր իսկապէս։[2]

---

1. Տես Եղիշէ (1893) յեղ. Ը. եր. 376. Իսկ կըրտսէր որդւոյն Յազկերտի ղայեակն, Ռահամ անուն ի Միհրան տոհմէն . . . յարձակեցաւ ի վերայ երէց որդւոյն Թագաւորին, հար սատակեաց զգունդն, եւ ձերբակալ արարեալ զորդի Թագաւորին, անդէն ի տեղւոջն հրամայէր սպանանել ։ Հմմ. Ղազար Փարպ. Դրուագ. Գ. պըրակ Կ. եր. 525. Սեբէոս Գ. գլ. Ա. ծան. Թարգմ.

2. Հայոց եկեղեցին ընդհակառակն ընդունեց միա-բ՚ակութիւն (Monophysitismus)․ որ հռովմէական տէրու-

Արդեօք Հեփթաղներն իրենց օգնութիւնն աւելի թանգ էին կամենում վճարել տալ, քան թէ

---

թեան մէջ եւս բազմաթիւ կուսակիցներ ունէր եւ թւում էր թէ այդտեղ երբեմն գերիշխան պիտի դառնայ:

Ծան. Հեղ.

Յարգելի գիտնականի այս մոլորութիւնն ընդհանուր է բոլոր եւրոպացոց համար, զարմանալի է, որ մեր մատենագրութեան քաջածանօթ անձինք անգամ ցարդ չեն կարողացել ազատուել այս մոլորութիւնից: Մեր եկեղեցու դաւանութեան եւ մեր սուրբ հարց գործերին մօտաւորապէս իսկ ծանօթութիւն ունեցող անձինք կարող են տեսնել, որ մեր ս. եկեղեցին հաւասարապէս խորշում է թէ միաբնակութիւնից եւ թէ երկաբնակութիւնից: Մեր ս. եկեղեցու մասին այս տեսակ մոլորութիւն տարածելուն շատ են նպաստել միարարները (unitor) եւ դրանց արժանի ժառանգ Մխիթարեանները, որոնք եւրոպացոց համար հեղինակաւոր անձինք են հայոց վերաբերեալ խնդիրներում: Եթէ այսօր բոլոր հանրագիտակ բառարաններում եւ բոլոր եւրոպական աղբիւրներում առհասարակ մեր եկեղեցին միաբնակ է կոչւում, այդ պարտական ենք մենք հայ երկաբնակներին: Կան պատմական մոլորութիւններ, որոնք դարեր են իշխում, այդպիսի մոլորութիւն է ահա եւ Հայաստանեայց եկեղեցին միաբնակ կոչելը: Շատերի համար անհասկանալի է մեր եկեղեցու դիրքն այն պատճառով, որ սա հաւասարապէս դատապարտելով երկու դաւանութիւնն եւս, աւելի կատաղի կռիւ է մղել երկաբնակութեան դէմ, բայց մեր սուրբ հարք գուշակելով այդ, միշտ յատկապէս շեշտել են իրենց վիճաբանական գրուածներում եւ միաբնակութեան սխալականութիւնը: Ամենից շօշափելի փաստը մեր միաբնակ չլինելուն այն է, որ ձեռնադրութեանց արարողութեան մէջ նզովում ենք թէ երկաբնակներին եւ թէ միաբնակներին:

Ծանօթ. Թարգ.

պայմանաւորուած էր. Թէ արդեօք Պերոզն իւր իսկական խոստումները չէր կատարել՝ չը գիտենք, միայն թէ կրկին մեծամեծ կռիւներ տեղի ունեցան նրանց ու պարսիկների մէջ։ Թէպէտ և Պերոզը մի քանի անգամ յաղթեց, բայց այն անապատներում, Կասպից ծովից դէպի արևելք, պատերազմներ վարելը շատ դժուարին էր։ Նա ստիպուած էր երկու անգամ աննպաստ դաշինք կռելու. մի անգամ հէնց ինքը թշնամուց գերի բռնուեցաւ։ Նրա որդի Կաւատը (Kavâdh) երկու տարի իբրև պատանդ մնաց, մինչև որ մեծաքանակ փրկանք հատուցուեցաւ։ Սակայն Պերոզը շարունակ խախտում էր իւր յանձն առած պայմանները. 484-ին ահագին բանակով թշնամու դէմ դուրս եկաւ։ Մի սոսկալի ճակատամարտի մէջ նա անհետ կորաւ։ Գերիների թւում էր թագաւորի աղջիկը, Հեփթաղների թագաւորը դրան իւր հարեմն առաւ։ 1

Մի ծանր ժամանակ հասաւ Պարսկաստանի համար։ Յաղթողներն ողողեցին ամբողջ երկիրը։ Մի առ ժամանակ թագաւոր չը կար։ Բայց Կարինեան հզօր տնից Զարմիհրին յաջողեց տէրութեան մէջ կրկին կարգը վերականգնել։ Սա Պերոզի մահուան ժամանակ գտնուում էր կրկին ապստամբած Հայաստանում. 2 որ նա արդէն գրեթէ նուաճել էր։

---

1. Ղազար Փարպ. եր. 474–75. դրուագ Գ. գլ. ՁԵ. Համ. Սեբէոս գիրք Գ. գլ. Ա. Մ. Կաղանկատ. գիրք Ա. գլ. ԺԶ. Ժ. Թ.

2. Ղազ Փարպ. եր. 480 դրուագ. Գ. գլ. ՁԵ. ըստ որում Զարմիհր Հազարաւուխտը Հեփթաղաց պատերազմից

Արդ. շտապեց սա մայրաքաղաք և թագաւոր կրգեաց Բալաշին 1 (Վաղարշ), կռուում ընկած թագաւորի եղբօրը։ Հաւանօրէն բանագնացութիւն արաւ սա յաղթողների հետ և տարեկան մի որոշ տուրքով ազատուեցաւ նրանցից։ 2

Վաղարշի մի այլ եղբայրը, Զարեհ անունով, որ նոյնպէս թագի էր ձգտում, յաղթուեցաւ և սպանուեց։ Բայց թագաւորը բաւական անզօր էր։ Հայերին նա այնու նուաճեց, որ պարսկական պետական կրօնը նրանց երկրից հանել խոստացաւ։ 3 Այն գովասանքը, որ հայերն ու ասորիք Վաղարշի հեզութեան են տալիս, կարող է արդարացի լինել, բայց թերևս հիմնուած է նրա այն հակառակութիւնների վրայ, որ ունէր զրադաշտեան մոգերի հետ։ Որովհետև իւր գանձարանը շատ հասկանալի պատճառաւ դատարկ էր, ուստի չէր կարողանում

---

առաջ Վրաստան էր գնացել, իսկ Հայաստանում թողել էր Շապուհ Միհրանեանին։ Ծ. Թ.

1. Այս նոյն անունն է, որի հնագոյն ձևն է Վաղարշ (յունարէն Ոլոգեզէս) եւ որ քանի մի պարթեւ թագաւորներ էին կրում։ Հմմ. Մով. Խաղանկ. գիրք Ա գլ. ԺԷ։

2. Պարսկական աւանդութիւնն այս հանգամանքն այսպէս է պատմում, որ իբրեւ թէ սա (կամ ինկապէս սրա փոխանակ Սոհրան - Sôchrâ, որ նոյն Վաղարշն է) թշնամիներին յաղթել եւ նրանց ստիպել է բոլոր աւարը յետ դարձնել։

3. Ղազար Փ. դրուագ Գ. գլ. ՁԸ. եր. 491. Նուարսակի դաշնադրութիւնն է։ Ծ. Թ.

մեծամեծների մէջ կուսակցութիւն ունենալ և բանակըն իւր հետ կապել. ուստի մոգերը (488-ին կամ 489-ին) այնտեղն հասցրին, որ նրա աչքերն հանուեցաւ և այդու կառավարելու անընդունակ դարձաւ։ Որովհետև միայն այն անձը, որի բոլոր անդամներն ու զգայարանները ողջ են, նա կարող էր ըստ պարսկական օրէնքների թագաւոր լինել։

Սրա փոխարէն թագաւոր դրուեցաւ ԿԱՒԱՏԸ (Kavâdh), Պերոզի որդին։ Տէրութիւնը սրա ժամանակ շատ անհանգիստ վիճակի մէջ էր։ Մենք լսում ենք լեռնական վայրենի ազգերի ապստամբութիւնների և Հայաստանի կրկին ոտքի կանգնելու մասին։ Կաւատը մտադիր չը լինելով իրեն գահ բարձրացնող աւագանու անձնուէր ծառայի դերը կատարելու, մի վտանգաւոր ճանապարհ բռնեց, ազնուականներին և մոգերին տկարացնելու. Նա հովանաւորեց Մազդակին, մի կրօնական ու ընկերական վարդապետութեան եռանդուն քարոզչի, սա յանուն արդարութեան պահանջում էր, որ այն անձն, որ հարուստ է և մի քանի կանայք ունի, իւր ունեցածից աւելորդը կարօտեալներին տայ։ Բանը միայն տեսականութեամբ չը վերջացաւ. շատ տեղ սկսաւ ստացուածքի և կանանց բաժանումն։ Բայց ահա միացան ազնուականներն ու կղերականները, Կաւատին գահավէժ արին և բանտարկեցին «Անյուշ բերդում»։ 1 Թագն ստացաւ նրա եղբայր

1. Գիլգերդ է կոչում այժմ և գտնում է Հիւսիսային Սուզիանում, ուր Հէնրի Ռաուլինսոն գտաւ այդ բերդը:

Ջամասպ (մերձ 497-ին)։ Բայց Կաւատը փախաւ և ապաւինեց Հեփթաղներին, որոնց մօտ նա արդէն իբրև պատանդ ապրել էր։ Թագաւորն իւր աղջիկը նրան կնութեան տուաւ, Պերոզի վերջին ճակատամարտում գերի ընկած դստեր տղջիկը։ Հեփթաղաց իշխանի օգնութեամբ կարողացաւ Կաւատ Զամասպին գահավէժ անել և կրկին պարսից թագաւոր դառնալ (428-ին կամ 499-ին)։ Սրա փախուստն և կրկին գահ ամբառնալն երևում է ամենազօրեղ մեծամեծներից մի քանիսի աջակցութեամբ է տեղի ունեցել։ Պարսկական աւանդութեամբ Զարմիհրը նրան հետևել է նոյն իսկ այս պքսորանքի մէջ, սակայն այս մարդու և Կաւատի Հեփթաղների մօտ փախչելու մասին տեղեկութիւններն այնքան խառնաշփոթ են, որ չենք կարող դրանց հաւատ ընծայել։ Ստոյգ է միայն, որ թագաւորը իւր վերադարձից յետոյ խիստ դատաստան է արել։ Ենթադրելի է, որ նա արդէն իսկ այն ժամանակ Զարմիհրին զոհեց, երբ նրան իւր վտանգաւոր մրցակցին, Միհրանեան Շապուհի ձեռքը մատնեց։ Այսուհետև հազիւ թէ Կաւատը Մազդակեանների հետ արած փորձը շարունակած լինի։

Յամենայն դէպս նա խաղաղութիւնը հազիւ էր վերականգնել, որ հռովմէական պատերազմն սկսաւ։ Շատ բանակցութիւններ էին տեղի ունեցել, երկու տէրութիւններն էլ դաշինքը քիչ շատ քանդել էին, խնդիրը միայն այն էր, թէ արդեօք երկուսից մէկը պատերազմի պատճառ գտնել

ուզ՞ում էր։ Այդ ցանկութիւնն ունէր Կաւատը։ Սա 502-ին ամառը սկսաւ այն սոսկալի կռիւների շրջանը, որոնց մէջ արեւելեան Հռովմը և Պարսկաստանը փոխադարձաբար միմեանց այնքան տըկարացրին, որ դրանով Հնարաւոր կացուցին արաբների յաղթանակը։ Օգոստոսին առանց պատերազմի առաւ նա Թէոդոսիոպոլիս (Կարին, Էրզրում), Հռովմէական Հայաստանի մայրաքաղաքը։ Յունուարի 10-ին, 503 թուի, եռամսեայ պաշարումից յետոյ ընկաւ Համիթ (Amid) քաղաքը և սոսկալի կերպիւ պատժուեցաւ իւր դիմադրութեան Համար։ Քաղաքի բնակիչներից բիւրաւոր անձինք մորթուեցան։ Այս պատերազմը, որի մասին ասորի ժամանակագիրները մանաւանդ շատ լաւ տեղեկութիւններ են Հասցրել, Հռովմայեցիք առանց եռանդի և առանց մի ընդհանուր ղեկավարութեան էին շարունակում։ Միջագետքը սարսափելի կերպիւ աւերուեցաւ։ Համիթ քաղաքը Հռովմայեցիք կրկին ձեռք բերին 504-ին դաշնադրութեամբ կամ իսկապէս փողով։ Բազմաթիւ ճակատամարտներից և պաշարումներից յետոյ խաղաղութեան դաշն կռուեցաւ 506-ի աշնանը, այս դաշնադրութեամբ ամենայն ինչ մնաց նախկին դրութեամբ։ Հռովմէացիք կրկին յանձն առին տարեկան մի գումար Հատուցանել Կովկասեան ամրութիւնների պահպանութեան Համար։ Պարսիկները խաղաղութիւն անելու են ստիպուել «Հոնաց» մի պատերազմի պատճառով։ Աչքի առաջ ունենալով այն անորոշութիւնը, որով այն ժամանակուան յոյները «Հոնք» ա-

նուէր գործ էին դնում, կարող չենք ասել, թէ ո՞ր լեռնական ազգը պիտի հասկանանք այդ անուամբ։ Որ Կաւատն այդ միջոցներին արտաքին կամ ներքին թշնամիներից նեղն էր ձգուած, տեսնում ենք այն հանգամանքից, որ Անաստասիոս կայսեր կողմից դաշանց մի յայտնի դրժման ժամանակ Կաւատը գործով չարգիլեց։ Անաստասիոս կայսրն անմիջապէս սահմանի վերայ, Դարա գիւղում, մի մեծ ամրոց շինեց, որ սպառնում էր Մծբնին։ Քանի դեռ Անաստասիոսը կենդանի էր, թշնամական ոչ մի գործ տեղի չունեցաւ։ Բայց Յուստին Ա. (9. յուլիս 610—1. օգոստ. 527) թուում է՝ թէ դադրեցրեց պարսիկներին պայմանաւորուած դրամն հատուցանելու։ Դրա համար Կաւատը թոյլ տուաւ, որ արաբները հռովմէական երկիրներն ասպատակեն։ Հռովմէական բանակները կրկին աւերելով խուժեցին պարսկական Հայաստան։ Սրա վրան աւելացան և խիստ երկպառակութիւններ կովկաս—պոնտոսեան երկրների վերաբերութեամբ, որոնց վերայ երկու տէրութիւններն էլ գերիշխանութեան իրաւունքներ էին յայտնում։ Սակայն Կաւատն այդ ժամանակ քիչ ցանկութիւն ունէր կռուի։ Թերևս նա համոզուել էր, որ տևական օգուտներ անհնար է ձեռք բերել։ Կրկին և կրկին նորոգուող բանագնացութեանց մէջ նա միայն մի դիտաւորութիւն ունէր։ Նա ցանկանում էր Խոսրովի, իւր ամենասիրելի և անշուշտ ամենաընդունակ որդու համար գահն ապահովել, թէպէտ և նա աւագ չէր, այդ նպատակով մի տեսակ երաշ-

խաւորութիւն էր ուզում կայսրից, որ պէտք է Խոսրովին որդեգրէր.[1] Այս և այլ բաների մասին բանագնացութիւններ էին անում Մծբնում: Եթէ գործերի ընթացքն այնպէս են, ինչպէս մեզ հաղորդուած է, ասել է թէ հռովմայեցիք շատ սխալ են վարուել: Ցամենայն դէպս բանագնացութիւններն ապարդիւն եղան և երկու կողմերն էլ սաստիկ դըժգոհ մնացին: Հռովմէական պատգամաւորութեան պարագլուխը պաշտօնանկութեամբ ազատուեցաւ, իսկ պարսկականինը, որ թէպէտ թագաւորին անձնականապէս մեծ ծառայութիւն էր մատուցել, գլխատուեցաւ: Այս բանագնացութիւնները տեղի են ունեցել 525 կամ 526-ին: Կռիւն[2] սկսաւ դեռ Յուստին կայսեր մահուանից առաջ: Արդէն 527-ի ամառը սահմանի վրայ կատաղութեամբ կռուում էին: Հռովմէացիք մի ապարդիւն յարձակումն արին Մըծբնի վրայ, պարսիկներն էլ մի նոյնպիսի անհետևանք արշաւանք Դարայի վրայ:

Այս բազմամեայ պատերազմների ընթացքում, որ յաճախ բանագնացութիւններով ընդհատուում էր, Բելիզարը երևան է գալիս իբրև զօրավար: Մի աչքի ընկնող իրողութիւն էր այս միջոցին ի մի-

---

1. Գլխաւոր խնդիրն այն է, որ Խոսրովի նշանակութիւնը «կայսեր որդի» անունով անչափ կը բարձրանար տիտղոսների եւ պատիւների մեծապէս սիրահար պարսիկների մէջ:

2. Գլխաւոր աղբիւրն է բացի Պրոկոպիոսից մի ասորական պատմութեան (Land's Anecdota syr. Bz. 31)

ջի այլոց և Մունդիրի Ասորիք ասպատակելը։ Սա էր արաբ աւատական իշխանն Հիրայի, նոյն իսկ այն իշխանական տնից, որ յիշուեցաւ վերևում։ Կաւատին նա քիչ առաջ չափազանց զօրաւոր էր երևացել, ուստի մի առ ժամանակ խլել էր նորանից իւր տիրապետած երկիրն և կամ նրա մի մասը և տուել էր Հարիթի իշխանին, որ Կինդայի արքայական բազմածիւղ ընտանիքից էր։ Հազիւ թէ հաւանական լինի այն տեղեկութիւնը, որի համաձայն այս իրողութիւնը իբր թէ կապ է ունեցել Մազդակեանների շփոթութիւնների հետ։

Երբ հռովմէական պատերազմները սկսան, Կաւատը յետ դարձրեց պատերազմի մէջ փորձուած Մունդիրին իր ամբողջ տէրութիւնը։ Սա 529 թուի գարնանը յարձակուեց Ասորիքի վրայ, աւերեց բոլոր երկիրը մինչև Անտիոք և ահագին բազմութեամբ գերիներ բերաւ, որպէս զի դրանց համար փրկանքներ ստանայ։ Նա մի վայրենի հեթանոս էր, որ մի օրուան մէջ մի ասորական վանքի 400 կոյսերին մորթելով զոհ բերաւ իր աստուածուհի Ուզզային (Աստղկան աստեղ)։ Հէնց նոյն տարում պատերազմի մէջ ընկաւ նրա ոսոխ Հարիթը։

Կինդայի արքայական տոհմից իր ձեռքն ընկած գերիներին Հիրայում սպանել տուաւ նա։ Ամբողջ կէս դար շարունակ նա հռովմէական հպատակների սարսափն էր իր ասպատակներով՝ առանց հարցնելու խաղաղութի՞ւն է արդեօք թէ պատերազմ։ Վերջապէս ընկաւ նա (յունիս 554) հռովմէական արաբ

իշխան Հարիթի դէմ վարած պատերազմում, այս Հարիթը Ջաբալայի որդին էր, որի գերի բռնըուած որդուն նա նոյնպէս Ուզզային զոհ էր բերել։ Մունդիրն էր նոյնպէս, որ Կաւատին դրդել էր մի հարիւրամեայ փորձից յետոյ կրկին Ասորիք ասպատակելու համարձակուել (531)։ Պարսիկները առաջ անցան Եփրատի աջ ափով դէպի հիւսիս, իսկ Բելիսարն ստիպեց նրանց յետս նահանջելու։ Սակայն Կալլինիկոսի (Ռաքա) մօտ, ուրեմն սահմանին մերձ, մի ճակատ տեղի ունեցաւ, որի մէջ Բելիսարը բոլորովին ջարդուեց (19· ապրիլի 531)։ Չը նայելով այս յաղթութեան պարսիկ զօրավարը ստիպուեցաւ յետ դառնալ։ Միջագետքում այս տարի պարսիկները մեծ յաղթութիւն ունեցան և արդէն Մարտիրոսուպոլիս (Նփրկերտ, Maiferkat, արաբերէն Maijâfarkin) մեծ բերդն առել էին գրեթէ, երբ լուր հասաւ թէ թագաւորը փոխուել է, որից յետոյ զինադադար եղաւ։

Իւր մահուանից մի քանի տարի առաջ Կաւատն ինքը մի սոսկալի վախճան էր պատրաստել Մազդակեանների համար։ Սրանք թուում է թէ կրկին այնքան զօրացել էին, որ չը նայելով իրենց տեսական գաղափարականութեան, հասարակութեան և տէրութեան հիմունքները կործանելու էին սպառնում, ուստի այլևս չէր կարելի համբերել նրանց։ Մազդակեանների չարաղէտ վախճանը, որ ըստ արևելեան սովորութեան անչափ արիւնաթաթաւ էր, տեղի ունեցաւ 528-ին կամ 529-ին առաջնորդու-

թեամբ արքայորդի Խոսրովի, որի հետ հարկաւ համաձայն էր և թագաւորը։

Կաւատը մեռաւ 13-ին սեպտեմբերի 531 թուի, 92 տարեկան հասակում։ Անշուշտ նա Խոսրովին յաջորդ էր նշանակել։ Մի շատ լաւ վկայուած համբաւի համաձայն մինչև իսկ մահուան անկողնում նրան թագաւոր է պսակել տուել։ [1] Խոսրով Ա. (Chosroes, Chosrau), որ կոչւում էր Անուշռուան (Anôscharvân=Երանելի), յամենայն դէպս մի մեծ թագաւոր էր։ Մի գաղափարական իշխանի տիպար, ինչպէս արևելցիք նրան հանդիսացնում են, հարկաւ չէր նա ամենևին, իսկ «արդարադատ» մականունը նա իրաւունքով է կրում։ Գետնահարկի կանոնաւորումն, որ նրա հայրն էր սկսել, և այն միջոցները, որ հարկահանութեան վրայ վերահսկելու համար ձեռք առաւ, պէտք է հպատակներին էլ այնքան ձեռնտու եղած լինին, որքան և արքունի գանձարանին։ Գոնէ դրամական տեսակէտով ամենանշանա-

---

1. Որ Խոսրովի արքայ անուանուելը իւր հօր կողմից պարսիկ աւագանուն իբր զարմացրել է, ուղղակի անհնարին է։ Պէտք է աչքի առաջ ունենալ, որ Պրոկոպի աւանդածները այս գահաժառանգութեան եւ դրան կից պարագաների մասին, հիմնուած են Կ. Պոլիս փախած, իսկական կամ ոչ իսկական, գահաժառանգի (Կաւատ, որդի Ջամի, թոռն Կաւատ թագաւորի) պատմածների վրայ. Այսու չենք կամենում հարկաւ ասել, որ այնպիսի բաներ, որպիսիք են արքայազների մերժումն եւ գլխատումն ազգասաւոր պաշտօնեաների, չէին կարող տեղի ունենալ Խոսրովի թագաւորութեան միջոցին։

ւոր գաւառում՝ Բաբելոնիայում (Իրաք) սրանից սահմանուած հարկահանութեան կարգը՝ մինչև Սասանեան տէրութեան անկումն անգամ արևելեան հանգամանքներին համաձայն ծանր չէ՛ երևացել մինչև իսկ շատ արդիւնաւէտ է եղել տէրութեան համար։ Այս մասին մենք ունինք արաբների անժխտելի վկայութիւնը՝ որոնք մահմետական շրջանի հարկերի ծանրութեան մասին խօսելով՝ միևնոյն ժամանակ տէրութեան դրամական վիճակին աճող վատթարանալն են շեշտում՝ համեմատելով պարսկական ժամանակի հետ։

Հասարակական բարեկեցութեան մասին հոգաց Խոսրով կամուրջներ, ջրանցքներ, թմբեր ևլն շինելով և նորոգելով։ Մազդակեանների ջնջումով, որ նա իր կառավարութեան հէնց սկզբում աւարտել էր, այնքան երախտիք ունէր զօրաստրեան կրօնի վրայ, որ մոգերը նրան բոլորովին անձնուէր էին, բայց Խոսրով թոյլ չը տուաւ նրանց երբէք իր վրայ իշխելու։ Բարձր աւագանուն նա կարողանում էր ճարտարութեամբ, բայց առանց վիրաւորելու, իրեն ծառայեցնել։ Տէրութեան ազնուապետական հիմունքները թւում է թէ նա աւելի զօրացրել է քան թէ տկարացրել։ Շրջահայեցութեամբ միջոցներ ձեռք առաւ Մազդակի առաջբերած ստացուածքի և ընտանեկան յարաբերութիւնների անկայունութիւնը մասամբ գոնէ բառնալու։ Առանձին խնամք ցոյց տուաւ նա զօրքի կազմութեան։ Խոսրովն անժխտելի ձգտումն ունէր դէպի արևմտեան կըր-

թութիւնը։ Հասկանալի է ի հարկէ, որ անկարելի է սպասել, որ մի ասիացի բռնակալ յունական հանճարի ստեղծած ամենալաւն ու ամենազնիւը կարողանար գնահատել մի այնպիսի ժամանակ, երբ նոյն իսկ՛ Եւրոպայում շատ սակաւները միայն այդ բաների համար քիչ շատ հասկացողութիւն ունէին։

Այն հեթանոս փիլիսոփաները, որոնք նրա մօտ գնացին Պարսկաստանում փիլիսոփայութեան տէրութիւնը[1] գտնելու յուսով, յետ դարձան յիրաւի շուտով յուսախաբ, բայց Խոսրովի համար յաւիտենական փառքի արժանի մի գործ էր այն, որ 549 թուի խաղաղութեան դաշինքի մէջ նրա ձեռներեցութեամբ որոշուեցաւ, որ այդ փիլիսոփաները հռովմէական տէրութեան մէջ կարող լինեն ազատօրէն իրենց կրօնը պաշտելով ապրել։ Իւր քրիստոնեայ հպատակներին, քանի որ նրանք օրինապահ էին, ոչ միայն ոչ մի վիշտ չը պատճառեց, այլ ուղղակի պաշտպանեց նրանց հաւատը և այդպէս վարուեց ոչ միայն նեստորականների վերաբերութեամբ, այլ նաև միաբնակների, որոնք հռովմէական տէրութեան հետ աւելի սերտ կապեր ունէին, քան թէ նեստորականները։ Տէրութեան կրօնից դառնալը հին օրէնքի համաձայն մահուամբ էր պատժուում և մոգակրօնների մէջ քրիստոնէութիւն քարոզել խստիւ արգելուած էր. արդ երբ միաբնակ Ահուդէմմէհ

1. Համեմատիր Gibbon' cap. 40. Spiegel, Eran, Alterthumskunde 3. 461.

աբբան, որ առաջ Թագաւորից մեծամեծ նպաստներ էր ստացել իւր վանքի շինութեան համար, Թագաւորի որդկանցից մէկին մկրտեց, որ ապա հռովմէացւոց մօտ փախաւ. Խոսրովն այդ կրօնաւորին ծանր պատժի չենթարկեց, այլ երկու տարի շարունակ, մինչեւ իր մահը (12. օգոստ. 575), թեթեւ արգելանքի տակ պահեց, այնպէս որ նա կարող էր մինչեւ անգամ իր աշակերտների հետ յարաբերութիւն ունենալ.[1] Քրիստոնեաներն, համակրութիւնն անգամ նրա միւս անհնազանդ որդուն, ապստամբ արքայազն Անուշազատի համար, ոչ մի հալածանք չը յարոյց նրանց դէմ. Սակայն Խոսրովը մի թոյլ եւ մեղկ իշխան չէր, այլ եռանդուն, երբեմն եւ խիստ, մինչեւ իսկ անագորոյն եւ պատերազմասէր. 2

Խոսրովի գահակալութիւնից յետոյ սկսուած բանագնացութիւնները վերջացան մի տարուանից յետոյ մի «յաւիտենական խաղաղութեամբ» (սեպտ.

---

1. Անուղէմմէնի ասորական (չը տպագրուած) կենսագրութեան համաձայն, որ հաղորդել է ինձ աշակերտներիցս մէկը։ Կենսագիրը, որ ստիպուած է ակամայ այստեղ մի հին արեւելեան միապետի բոլորովին անօրինակ մեղմութեանը վկայելու, Թագաւորին սատանայական բռնակալ ներկայացնելու ձգտման յագուրդ է տալիս այնու, որ մի չափազանց անշնորհք հրաշքի միջոցով մի արգելքի մասին է պատմում, որ թոյլ չէ տուել աբբայի դէմ նիւթուած սպանման նախագիծն իրագործուէր։

2. Յոյն մատենագիրների աննպաստ վկայութիւնները, ինչպէս օրինակ Պրոկոպիոսինը, յառաջանում են այն տեղից, որ Խոսրով այնքան յաճախ զգալի կերպիւ վնասել է Հռովմայեցոց եւ նուաստացրել։

532.)։ Հռովմայեցիք համաձայնեցան տարեկան մի մեծ գումար վճարելու և այլ զիջումներ էլ արին, իսկ պարսիկները վերադարձրին Լազիստանի (սև ծովի արևելեան ծայրում, հին Կողքիսում) մի քանի բերդերը։ Ինչպէս երևում է, պարսից թագաւորն էլ շատ էր խաղաղութիւն ցանկանում։ Հաւանօրէն այդ խաղաղութիւնը նա գործ դրաւ անմիջապէս իւր տէրութեան սահմաններն ապահովելու ընդդէմ զանազան բարբարոսների։ Աւանդութիւնն արդար կերպով նրան վերագրում է մեծամեծ ճիգեր Կովկասեան և հիւսիս արևելեան սահմանների ապահովութեան համար 1, սրան են վերաբերում նոյնպէս և մի քանի ըմբոստ ցեղերի բռնի գաղթեցնելը։ Մի քանի տարուանից յետոյ նա կրկին իրեն այնքան զօրաւոր զգաց, որ կարող էր հռոմների դէմ պատերազմել։ Թերևս իսկապէս վախենում էր նա այդ միջոցներին Յուստինեանոսի Ափրիկէում և Իտալիայում տարած յաղթութիւններից և կամենում էր խանգարել բիւզանդական կայսրութեան չափազանց զօրանալուն։

Գոթերի թագաւոր Վիտիգէսի դեսպաններին երևի պարսից թագաւորին հասկացրած կը լինին դրանցից պարսից տէրութեան համար յառաջացող վտանգները։ Առաւել ևս գրգռած կը լինի նրան այն հանգամանքը, որ բիւզանդեան Հայաստանի նախարարները, որոնք բազմադիմի անիրաւութիւնների պատ-

1. Տես Սեբէոս, Գիրք Գ. գլ. Բ. Ժ. Թ.

ճառով ապստամբել էին, իրեն օգնութեանը դիմեցին, թէպէտ և իրենք էլ քրիստոնեայ էին. Դաշնադրութեան պայմանների մանր խախտումներ թոյլ էին տուել թէ հռոմները և թէ պարսիկները, դրա մասին արդէն իսկ հոգացել էին երկու տէրութեան սահմաններում բնակուող արաբները. Յամենայն դէպս Խոսրովն այս անգամ պատերազմ էր կամենում. Այս պատճառաւ էլ 540 թուին դուրս եկաւ նա վաղաժամ, որպէս զի Շապուհ Ա.-ի պէս Ասորիքի վերայ յարձակուի.

Ամրագոյն քաղաքների մօտով, որոնք մեծամեծ գումարներ էին տալիս իբրև փրկանք, անցնում էր նա, իսկ դիմադրողներն առնում էր կրաուով. Ամէնից առաջ այդպիսի վիճակի ենթարկուեց համաշխարհաքաղաք Անտիոքը. Զօրքն այդտեղից անչափ աւար տարաւ իւր հետ, դրանց մէջ շատ գեղարուեստական ճարտարագործութիւններ. Քաղաքն այրեց և բնակիչներին գերի վարեց. Այսպէս կոչուած «հռովմէական» ծովի եզերքն հանելուց յետոյ, յաղթական կերպիւ անցաւ նա հիւսիսային Ասորիքի և Միջագետքի միջով արևմուտքից դէպի արևելք. Դարա ամրոցն էլ, որ իբրև դաշնադրութեան հակառակ կառուցուած մի բերդ միշտ պարսիկների աչքին փուշ էր, ստիպուած եղաւ փրկանք վճարելով ազատուել.[1] Միայն Խառանի բնակիչները, որ ըստ մեծի մասին հեթա-

1. Տես Սեբ. Բ. գլ. ե.

նոմներ էին, ուստի և հաւանօրէն համակրելի կը լինէին մի ոչ քրիստոնեայ տէրութեան, առանց փրկանքի ազատուեցան։

Ամառուան վերջին, առանց բաց դաշտի վրայ դիմադրութեան հանդիպելու, յետ դարձաւ նա Տիզբոն։ Հին բարբարոսական այն սովորութիւնը, որով ամբողջ քաղաքների և երկրների բնակիչներ գաղթեցնում էին, Սասանեանները պահպանել էին։ Բայց Խոսրովն առաւել ևս քան Շապուհ Բ.-ը այս միջոցը գործ դնելուս նպատակ ունէր արևմուտքի կրթութիւնն և ճարտարութիւնն իրեն ծառայեցնելու։ Գերի բերուած Անտիոքացոց համար հիմնեց նա իւր մայրաքաղաքին մօտ մի յատուկ քաղաք «Խոսրով—Անտիոք», որ «Հոռոմների քաղաք» և կոչւում է։ 1 Այս քաղաքը նա շինել տուաւ կարելի եղածին չափ արևմտեան ձևով։ Նոր քաղաքացիների համար նա լաւ հոգ տարաւ, նրանց շնորհեց կրօնական ազատութիւն, մինչև իսկ մի քրիստոնեայ քաղաքապետ կարգեց նրանց վրայ։ Այս քաղաքի հիմնարկութիւնը մի յիշատակի արժանի փաստ է հռովմէական քաղաքակրթութեան ճանաչողութեան համար։ Քաղաքիս բնակիչները պահեցին իրենց բարք ու վարքը մինչև պարսից տէրութեան անկումն, և օրինակի աղագաւ ձիար-

---

1. Սեբ. ibid վեց Անձատոք Խոսրով, զոր անուանեալ Շահաստանին Ոկնոյ կոչեն։ Անձատոք աղաւաղուած է Անտիոքից։ Ծ. Թ.

շաւներն այդտեղ նոյն եռանդով էին շարունկուում, որպէս և հին Անտիոքում։

Պատերազմի երկրորդ տարում Խոսրովը կանչուելով Լազիստանի բնակիչներից, արշաւեց դէպի այն կողմն, հասաւ մինչև Սև ծովը և առաւ ամուր Պետրա քաղաքը։ Միջագետքում քանի մի տարի շարունակ փոփոխակի յաջողութեամբ կռիւ մղուեցաւ, 546-ին զինադադար եղաւ հինգ տարով, շնորհիւ այն հանգամանքի, որ հռոմները մի նշանաւոր գումար վճարեցին պարսիկներին։ Լազիստանը սակայն խաղաղութեան մէջ ընդունուած սահմանից դուրս մնաց, նոյնը տեղի ունեցաւ և 553-ին, երբ խաղաղութեան դաշն էլի հինգ տարով երկարացուեցաւ։

Երկու տէրութիւնների սահմաններում բնակող արաբացիք էլ այդ միջոցներին շարունակում էին կռուել միմեանց հետ։ Միայն 556-ին խաղաղութիւն հաստատուեցաւ և Լազիստանում, ուր հռոմները յաջողութիւններ էին ունեցել, և 562-ին Ծննդեան տօների ժամանակ մի խաղաղութեան դաշըն կռուեցաւ 50 տարով։ Հռոմները պարտաւորութիւն յանձն առան վերստին տարեկան մի նշանաւոր գումար վճարելու, պարսիկները հրաժարուեցան Լազիստանից, բայց այն խնդիրը, թէ ո՞ւմ պիտի պատկանի այդ երկրին հարաւ Սուանեան, մնաց անորոշ։ Իբրև մի բացառութիւն յայտնի են մեզ այս դաշնագրութեան յօդուածները. դրանց մէջ նշանաւոր է այն, որ հռոմները Պարսկաստա-

նի քրիստոնէից համար կրօնի կատարեալ ազատութեան պայմանն ընդունել են տալիս, բայց իրենք էլ ընդունում են, որ դրանց զօրաստրեանների մէջ քարոզութիւն անելն արգելուած է (և ի հարկէ, այդ արգելքի դէմ գործողներին խիստ պատիժ տալը դաշինքի խախտում չէ կարող համարուել)։

Ջինադադարների (547—562) ընթացքում մեծամեծ փոփոխութիւններ տեղի ունեցան արևելքում։ Այդ ժամանակներում հիւսիսային (Պարսկաստանի) անապատներում մի զօրաւոր տէրութիւն էր կազմուել. դա էր Թիւրքերի տէրութիւնը, որոնց անուն այժմ առաջին անգամ արևմտեան ազգերին յայտնուեցաւ։ Թիւրքերի Թագաւորը (Խաքան), որ յունական աղբիւրներում Զիլզիբուլոս և Պարսկա—արաբականներում Սինջիբու [1] է կոչուում, գրաւեց Հեփթաղների Օքսոս գետի աջ ափի երկրները, իսկ հաւանօրէն դրա հետ միաբանած Խոսրովը տիրեց ձախ ափի երկրներին (560)։ Այսպէս ուրեմն Բակտրիան, որի տէրերից Պարսկաստանն այնքան չարիք էր տեսել, միացուեցաւ Սասանեան տէրութեան հետ և Պերոզի կորստեան վրէժը լուծուեցաւ։ Թէ ինչքան պարսից աւանդութիւնն ուշ ժամանակումն է հաստատուել, կարելի է այն տեղից նկատել, որ առաջին անգամ այս ժամանակ ձեռք բերուած Օքսոսի սահմանը համարուում է իբ-

1. Տես Մովսէս Կաղանկատուացի, Մոսկվա 1860. Գիրք Բ. գլ. ԺԱ. ԺԱ. «Ջեբու Խաքան. Ծ. Թ.

րև ի սկզբանէ անտի գոյութիւն ունեցող մի սահմանագիծ Իրանի և Թուրանի մէջ և Թիւրքերին միշտ դրացի է համարում Իրանցիների հետ։ Թէպէտ և Խոսրով ամուսնացաւ Խաքանի աղջկայ հետ իւր բարեկամական դաշն ամրացնելու համար, բայց շուտով այդ բարեկամութիւնը փոխուեցաւ թըշնամութեան, որ Թիւրքեստանի և անապատների տիրապետների ու Խորասանի տէրերի միջև գրեթէ բնական մի բան է։ Խոսրովի այլ աշխարհակալութիւններն էլ այս ժամանակին պիտի վերաբերին։ Երբ պարսիկը խաղաղութեան դաշն կռելու ժամանակ յայտնում է, որ իւր տէրը իւր թագաւորութեան օրուանից արդէն 10 ազգեր է նուաճել, և երբ աւանդութիւնը 7 արևելեան երկրներ է թուում, որոնց նա տիրել է, մինչև իսկ ժամանակով ձախորդութեամբ կորցրած երկրները տէրութեանը կրկին նուաճել է, դա գրեթէ նոյն միտքն ունի։ Պարսից պարծենկոտ բարքն աչքի առաջ ունենալով՝ չէ կարելի այդ բոլորին բառացի կերպով հաւատալ։ Որ Խոսրովն երբ և իցէ տիրած է ամբողջ Աֆղանիստանին և Սինդին, ինչպէս կը հետևի վերևի յիշատակութիւնից, շատ անհաւանական է։ Սակայն աներկբայ է, որ նա տէրութեան արևելքն ամէն կողմից ընդարձակել ու ապահովել է։ Բացի սրանից պարսկական համբաւները սրա մասին բոլորովին առասպելական են. օրինակ, սրան վերագրում են Ցէյլոն կղզու նուաճումն։ Պարսիկները սրան համարում են Վռամ Ե.-ի պէս տիեզերակալ։

Քիչ արկածախնդրական էր իսկապէս Եմենին տիրելու ձեռնարկութիւնը (շուրջ 570)։ Այս երկրին տիրել էին 525-ին քրիստոնեայ Հաբէշները։ Եմենի իշխաններից մին խնդրեց Խոսրովին, որ իրեն օգնէ երկիրը այդ սեւամորթներից ազատելու համար։ Սակայն մի տատանուելուց յետոյ թագաւորը ծովով ուղարկեց մի փոքրիկ բանակ Վահրիճի հրամատարութեան ներքոյ, որ յիրաւի աբիսինեան անզօր տիրապետութեան վախճան տուաւ և երկիրը հպատակեցրեց Խոսրովին։ Այսպէս մնաց այս երկիրը ձեւական կերպով պարսից իշխանութեան տակ, մինչև մահմետական դառնալը, սակայն բացի հարկ ուղարկելուց, որ անշուշտ շատ ողորմելի բան էր և որ հազիւ թէ կանոնաւոր կերպով գալիս էր, տէրութիւնը այդ հեռաւոր գաւառից ոչ մի օգուտ չէ ստացել։ Մի այնպիսի անծովագնաց ազգի համար, որպիսին պարսիկներն են, անօգուտ է որ և է երկիր, որի ափը կարելի է դուրս գալ նաւով յարմարապէս։ Մի պարսկա-եմենեան ծովային վաճառականութեան ոչ մի հետք չենք գտնում։ Շատ կարելի է որ Խոսրովն աչքի առաջ ունեցած լինի հարաւ արեւմտեան Արաբիան գրաւելով վաճառաշահական օգուտներ հռոմներից խլելու և պարսիկներին սեփականացնելու, ինչպէս որ առհասարակ վաճառականական յարաբերութիւնները տէրութեան թշնամական և բարեկամական յարաբերութեանց մէջ դեր են խաղում. այսպէս մանա-

ւանդ առանձին դեր էր խաղում մետաքսի վաճառականութիւնը ներքին Ասիայի հետ։

Առանց ներքին կռուի էլ չիշխեց Խոսրովը։ Մերձաւորապէս 551-ին նրա որդի Անօշազադը, որ մի յանցանքի համար Սուզիանա էր աքսորուած, լսելով որ իւր հայրը ծանրապէս հիւանդացել է, արքայ հրատարակեց իրեն և ապստամբեցաւ։ Սա յենուեցաւ քրիստոնէից, իւր մօր կրօնակիցների վրան։ Սակայն նա շուտով նուաճուեց և գերի բռնուեց։ Նրան սպանել չը տուաւ Խոսրովը, այլ դէմքի մի թեթև կերպարանափոխութեամբ թագաւորելու անընդունակ դարձրեց։

Խոսրովն իւր թագաւորութեան վերջին տարիները երկին հռոմների հետ կռուել ստիպուած էր։ Սրանք բարեկամացան թիւրքաց Խաքանի հետ, որ այժմ Պարսկաստանի վտանգաւոր թշնամին էր դարձել։ Պարսիկներն աշխատում էին հռոմների ու Խաքանի յարաբերութիւններն ըստ կարելոյն խանգարել։ Հռոմները բացի դրանից դժգոհ էին Եմենի քրիստոնէական տէրութեան կործանելու մասին։ Սակայն սրանք երկրորդական բաներ էին։

Մինչև իսկ Յուստին Բ. (565 թ. Նոյեմբ. 14—578 թ. 6 հոկտ.) կայսեր դաշնագրութեան համաձայն որոշուած տարեկան հարկի վճարի դադարումն պատճառ չէր լինիլ անմիջապէս կռուի բացուելուն։ Սակայն պարսիկները կարող չէին հանդարտութեամբ դիտել, թէ ինչպէս յանկարծ բոլոր Հայաստանը հռովմէական դարձաւ։ Հայ նախարարները

կրկին խորհեցան ապստամբել: Եկեղեցականներն եւ մոլեռանդացած ամբոխը ոտքի ելան, երբ Դուին մայրաքաղաքում պարսիկները մի կրակատուն սկսան շինել, եւ Սուրէն [1] պարսիկն սպանուեցաւ (571) զարնանը: Ապստամբները դիմեցին Կ. Պոլիս: Նոյնպէս վարուեց վրաց Թագաւորն Հայաստանի հիւսիսում: Արդ անընդունակ կայսրն երեւակայեց թէ այդ երկիրն էլ կրկին հռովմէական դարձաւ եւ երկուսն էլ առաւ իւր հովանու տակ: Այսու պատերազմը հրատարակուած էր արդէն: Ինչքան էլ որ մենք այս պատերազմի մասին լաւ ժամանակակից զեկուցումներ ունինք, այսու ամենայնիւ պակասում է մի կատարեալ ժամանակագրական ստոյգ ընդհանուր տեսութիւն: Մծբինը հէնց սկզբում հռոմեներից իզուր պաշարուեցաւ, ընդհակառակն Դարան Խոսրովն առաւ վեցամսեայ պաշարումից ետքը (573): Նոյնաժամանակ նրա Ադարմահան զօրավարն յարձակուեց Եփրատի աջ ափիցը Ասորիք և նոյնպիսի աւերումն գործեց, ինչպէս 540 թուի բանակը: Առանձնապէս քանդեց նա Ապամէան և բնակիչներին գերի տարաւ: Դարայի առաջ Միջագետքի միջով անցնելուց յետոյ, միացաւ նա արքայի բանակի հետ: Գերիներն ըստ մեծի մասին բնակեցուեցան Նոր—Անտիոքում: Տիբերիոսը, որ Սոֆիա կայսրուհու հետ Կ. Պոլսում կառավարում էր և 574 թուի դեկտ. 7-ից սկսած ձևական կերպով էլ աթոռակից էր անուան-

1. Նոյն հին ցեղից, որի անդամներից մին 600 տարի առաջ Կրասոսին սպանել էր:

ուած, խաղաղութիւն էր ցանկանում։ Սակայն մի եռամեայ զինադադարի ընդունուելն անգամ կատարեալ խաղաղութիւն չը բերաւ։ Հայաստանն իսկապէս այս զինադադարի դաշինքի մէջ չէր առնուած։ Արդ Խոսրովը 575 թուի սկզբին ինքն անձամբ Հայաստան յարձակուեց եւ առաջ անցաւ մինչեւ Կապպադովկիա։ Հարկաւ նա ստիպուած եղաւ հռոմների գնդերի առաջ յետ քաշուիլ։ Սրանք աւարի առան նոյն իսկ Խոսրովի բանակը, սակայն չը կարողացան արգելել, որ նա Սեբաստիան և Մելետինէն չայրէ և անվտանգ յետ չը դառնայ իւր երկիրը։ Նրան հալածող հռոմները թէպէտ եւ գրաւեցին պարսից Հայաստանի մեծ մասն եւ այնտեղ էլ ձմեռեցին, բայց հէնց յաջորդ տարին այնտեղից դուրս վռնդուեցին։ Սրանց մինչեւ իսկ չէր յաջողուել այդ ազգի համակրութիւնը գրաւել, որ թէպէտեւ քրիստոնեայ էր, բայց չէր պատկանում հռոմների տէրունի եկեղեցուն, այլ հերձուածողական միաբնակութեան էր յարած (?!)։ Սակայն զինադադարի վերջանալուց առաջ պատերազմ բրդաւ և Հայաստանի սահմաններից դուրս։ Որ հռոմները պարսիկներից աւելի մարդասիրաբար չը վարուեցան, երևում է նրանից, որ պարսից սահմանակից Արզանենէ նահանգի քրիստոնեայ բնակիչներին գերի վարեցին. դեռ մի առանձին շնորհ համարուեցաւ այն, որ դրանց բնակավայր տուին Կիպրոս կղզու վրայ (577)։ Խաղաղութեան համար բանակցութիւնները կրկին և կրկին նորոգւում էին։ Նորագոյն փորձառութիւններից յետոյ Կ. Պոլսում դիւրաւ հրաժարուեցան պարսից Հայաստանից եւ Վրաստանից։ Պատուոյ խնդիր կազմող կէտի վերաբերութեամբ, այն է՝ Կ. Պոլիս փախած հայ աշխարհական և եկեղեցական մեծամեծնե-

րին պարսից վրէժխնդրութեան չը յանձնելու վերաբերութեամբ՝ արդէն իսկ համաձայնութիւն կարող էր կայացած լինել։ Գայթակղութեան քար մնաց Դարա ամրոցը՝ որի վերադարձման վրայ հռոմներն հասկանալի կերպով պնդում էին։ Այսուամենայնիւ համաձայնութիւնը կը կայանար և խաղաղութիւնը գլուխ կը գար՝ եթէ Տիբերիոսի միահեծան կայսր դառնալուց (4 կամ 6 հոկտ. 578) քիչ յետոյ Խոսրովը չը մեռնէր (մերձ փետր. 579)։ [1]

Նոր թագաւոր Որմիզդ Դ.՝ Խոսրովի և Թիւրք Խաքանի աղջկան որդին՝ ամբարտաւան էր և նոր ձեռնարկութիւններ սիրող։ Կ. Պոլսում դըժգոհ մնացին այն բանից՝ որ նա մինչև իսկ իւր գահակալութիւնը չը յայտնեց՝ մինչդեռ երկու արքունիքն էլ այդպիսի յայտարարութիւններ մինչև իսկ պատերազմների ժամանակ ամենայն ձևականութեամբ անում էին։ Յոյն մատենագիրներն Որմըզդի վրայ առհասարակ վատ են խօսում։ Պարսկական աւանդութիւնն էլ պատմում է՝ որ նա չարամիտ էր և շատ արիւն է թափել։ Որ նա իւր եղբայրներին սպանել է գահակալութեան ժամանակ՝ գիտենք մի ժամանակակցից՝ որ սակայն ինքն է յայտնում՝ որ այդ մի բարբարոսական և պարսիկ սովորութիւն էր։ Աւանդութիւնը սակայն միւս կողմից ասում է՝ որ նա առանց անձի պատուին նայելու ամենայն խստութեամբ արդարադատութիւն

---

1. Սեբէոս Գիրք Բ. եր. 59 Գիրք Գ. գլ. Բ. եր. 32։ Ժ. Թ.

էր անում և հասարակ մարդկանց պաշտպանում էր մեծամեծների ընդդէմ։ Նրա խստութեան են-թարկւում էին միայն մեծամեծները։ Սրան հա-մաձայնում է և այն հանգամանքը, որ նա հասա-րակ հետևակ գնդերը խնամում էր, իսկ ազնուա-կաններից կազմուած զրահաւոր հեծեալների պա-տիւը նուազեցնում էր։ Մոգերին ևս գրգռեց նա, և այն էլ իրեն մեծ պատիւ բերող մի վճռով, երբ նրանց քրիստոնեաներին նուաստացնելու բաղձանքը հեգնօրէն մերժեց։ [2] Մասամբ ինչ սա նմանում է Յազկերտին, որին և ճակատագրակից եղաւ։ Սրա դժբաղդութիւնն այն էր, որ աշխարհական և հոգևոր մեծամեծներին չկարողացաւ այն մտա-ւոր գերիշխանու թեամբ ղեկավարել, ինչպէս իւր հայրն։

Նրա թագաւորութեան բոլոր ժամանակը պա-տերազմը հռոմների հետ անընդհատ շարունակ-

---

2. Նրա խօսքերն են. «Ինչպէս որ մեր արքայական գահը չի կարող իւր երկու առաջի ոտների վրայ կանգուն մնալ առանց երկու յետեւի ոտների, այսպէս էլ կանգուն չի մնալ եւ ապահով չի լինիլ մեր թագաւորութիւնը, եթէ մենք քրիստոնեաներին եւ մեր կրօնը չը ղաւանող այլա-կրօններին մեզ դէմ գրգռենք: Ուստի թողէք յարձակում-ները քրիստոնէից դէմ, սակայն եռանդով աշխատեցէք բարի գործեր ունենալու, որպէս զի քրիստոնեաներն եւ միւս այլակրօններն այդ տեսանեն, ծեզ դրա համար գովեն եւ դէպի ծեր կրօ՛նը գրաւուին»: Ի՛նչպէս այս «հեթանոսը իւր անգիտակից ցուցմամբ (Տ. Մատթ. գլ. Ե. 16.) ամա-չեցնում է հին եւ նոր ժամանակի քրիստոնեաների ան-համբերողութիւնն:

ուում էր։ Բանագնացութիւնները կրկին և կրկին ընդհատուում էին։ Դրան աւելացաւ և մի դըժուար կռիւ Թիւրքերի հետ։ Որմիզդը դրանց դէմ ուղարկեց Բահրամ Չոբենին։[1] Սրան յաջողուեց Թիւրքերին, յատկապէս երևի Խաքանի ստորադըրեալներից մէկին, փառաւոր կերպով յաղթել և մեծ աւար առնել նրանցից, իբր թէ մինչև իսկ Թիւրքերին ստիպեց հարկ վճարել պարսիկներին, փոխանակ այն հարկի, որ պարսիկները վճարում էին Թիւրքին։ Յաղթական զօրապետը ուղարկուեց (589) Կովկասի հարաւային կողմի երկրները, որպէս զի այնտեղից հռոմներին մի մեծ հարուած հասցնէ։ Սակայն այնտեղ Բահրամը կոր ի գլուխ յաղթուեցաւ։ Որմիզդն արդ յիմարութիւն ունեցաւ այս փորձառու զօրավարին, Միհրան տան նահապետին, խայտառակութեամբ պատուազուրկ անելու։ Բահրամն ի պատասխանի այս վարման ապստամբեց։[2] Իւր բանակը հաւատարիմ մնաց իրեն։ Երևի նա գիտէր, թէ ի՞նչքան աւագանին դժգոհ էր, նոյնպիսի յոյս կարող էր ունենալ զօրագնդի

---

1. Սեբէոս, Գիրք Բ. գլ. Բ. 52. Վահրամ Մերհեւանդակ է կոչում սրան։

2. Սեբէոսը նոյն տեղում (եր. 53) չէ յիշում կովկասեան արշաւանքն եւ Բահրամի ապստամբութեան պատճառ է համարում Թագաւորի կոպիտ վարմունքը, որովհետեւ Որմիզդ գոհ չը լինելով Թիւրքի պատերազմից ստացած աւարից, աւելին էր պահանջել։

*դժգոհութեան վրայ։ Ցիրաւի ապստամբեց և Միջագետքի բանակը, որ հոռոմներից յաղթուելով Մծբին էր քաշուել և Թագաւորի պատժից էր վախենում, սա էլ միացաւ Բահրամի հետ առանց սակայն իւր ինքնուրոյնութիւնը կորցնելու։ Բահրամն արդէն ճանապարհին էր դէպի մայրաքաղաքը և հասել էր մինչև մեծ Զաբը (այսօրուան Մուսուլից ոչ հեռու), երբ մի Թագաւորական բանակ նրա ընդդէմ դուրս եկաւ։ Սակայն այս բանակն էլ ապստամբեց, բայց ոչ յօգուտ Բահրամի, այլ Թագաւորի որդու Խոսրովի։ Քիչ յետոյ այս բանակի մի մասն արդէն մայրաքաղաքումն էր, ուր Որմիզդն այս գործերից դրդուած Մարաստանից շտապել էր, և ապստամբութիւնը խռովում էր Տիզբոնը։ Այնտեղ բանտարկուած էր Բինդոյէն* 3 (Bindôë) (*մի վիճակ որ այնքան սովորական էր արևելեան մեծամեծների համար*), *սրա քոյրը Խոսրովի մայրն էր։ Սրա եղբայր Վստամը* (Bistâm, Vistahm) *ուժով ազատեց նրան բանտից և այն ժամանակ աւագանին Որմզդին վայր առաւ և Խոսրովին Թագաւոր անուանեց* (590-*ի ամառը*)։ *Խոսրովն իւր հօր հետ վատ յարաբերութիւնների մէջ էր և անշուշտ այդ ապստամբութիւնից անմասն չէր։ Թէ ինչքան արգելք նա յանցաւոր է նրանից յետոյ տեղի ունեցած Խոսրովի մահուան մէջ, չենք կարող ստոյգն իմանալ. երևի նա Թոյլ տուաւ կատարելու այն, ինչ որ ինքը չէր կարող արգիլել։*

---

5. *Սեբէոս Վնդոյ է կոչում սրան, իսկ Մ. Կաղ. Բինդոյ։*
Ծ. Թ.

Խսրով Բ, որի մականունն է Փարուէզ (Ապրուէզ), Ցաղթական, զուր ջանաց Վահրամին իւր կողմը քաշելու։ Նա կամենում էր ինքն իշխել յանուն մի անչափահաս արքայորդու և կամ աւելի եւս յանուն իւր։ Խոսրովը նրա դիմացն ելաւ, սակայն նրա զօրքն էլ հաւատարիմ չը մնաց իրեն։ Անուանի զօրավարն աւելի յարգանք էր ազդում, քան թէ անարի արքան, ուստի և թողին նրան հէնց առաջին լուրջ ճակատամարտից յետոյ։ Խոսրովը փախաւ իւր ընտանիքով և մի քանի հաւատարիմներով Ասորիք հոռոմների մօտ։ Սահմանագլխի Կերկեսիում (Circesium) քաղաքը հասնելով՝ նա մի աղերսական նամակ գրեց և օգնութիւն խնդրեց Մօրիկ (Mauricius. իշխում էր սկսած 14 օգ. 582 թ.)։ Սա ճարպիկ չեղաւ այս անսովոր բարեյաջող հանգամանքներից իւր տէրութեան համար օգտուելու։ Նա յանձն առաւ Խոսրովին յետ տանելու և իւր գահի վրայ բազմեցնելու առանց իւր համար մի գոհացուցիչ վարձ ապահովելու։ Ինչպէս հասարակ ծագումից առաջ եկած մի մարդ՝ հաւանօրէն նա արդէն իսկ շողոքորթուած էր համարում իրեն, որ կարող է հնագոյն արքունի ցեղի մի շառաւիղ օրինական թագաւորի կրկին իւր գահի վրայ նստեցնել և իրեն նրա «հայր» հրատարակել։ Վահրամն այդմիջոցին քիչ տատանումից յետոյ ինք իրեն արքայ էր հրատարակել տուել և իւր անունով դրամներ կտրել։ Նա կարողացել էր Բինդոյէին իւր ձեռքը ձգել։ Սակայն Վահրամի գահը տատանւում

էր հէնց սկզբից։ Մեծամեծները նրան իբրև իրենց հաւասարին չէին հնազանդում։ Մինչև իսկ պարթևական իշխանութեան մէջ, ինչքան էլ շուտ շուտ թագաւորներին գահավէժ էին անում և թագաւորներ էին նստացնում, միշտ աչքի առաջ էին ունենում, որ միայն արշակունի լինի թագ կրողը, այնպիսի օրինապահական տեսակէտ աւելի ևս զօրաւոր էր Սասանեանց ժամանակ։ Ժողովրդական հասկացողութեամբ «հին արքայական վեհափառութիւնը» (Փառահի Կայանիկ) կապուած էր Արտաշրի տան հետ և այլ ոք կարող չէր երբէք թագաւոր լինել։ Նոյն իսկ Տիզբոնում մի ապստամբութիւն ծագեց, որ Վահրամը թէպէտ և ընկճեց, որի միջոցին սակայն Բինդոյէն փախաւ յօգուտ իւր քեռորդու աշխատելու։ Արդէն 591 թուի սկըզբին մի կայսերական բանակ յառաջ էր անցել, Խոսրովին կրկին գահի վրայ նստեցնելու համար։ Մարտիրոսուպոլիսը (Նփրկերտ), որ քիչ առաջ դաւաճանութեամբ պարսիկների ձեռն էր ընկել և արդէն բաւական երկար ժամանակ պաշարուած էր, թոյլ տուաւ Խոսրով հռոմներին յանձնելու. Նոյնպէս և Դարան։ Մծբնի մօտ պարսիկ բանակը միացաւ արդ. Խոսրովի հետ։ Ամենայն օր գալիս և միանում էին նրա հետ պարսիկ մեծամեծներ և դրանց թւում և հայ նախարարներ։ Այլ գնդեր էլ գալիս և յարում էին օրինաւոր թագաւորին։ Ադրբէյջանում (Ատրպատական) Վըս-

տամը մի բանակ ժողովեց Վահրամի ընդդէմ։ Հոռոմ—պարսկական գլխաւոր զօրաբանակը Տիգրիսի ձախ ափով Նրա առաջն էր ընՙժանում։ Բայց դեռ մինչև բանակների ընդհարումն մի արքունի նախայարձակ խումբ Միջագետքի անապատով ուղիղ ճանապարհով հասել և գրաւել էր Սելևկիա, Տիզբոն և Նոր—Անտիոք մայրաքաղաքները։ Ամէնքն էլ օրինաւոր թագաւորին էին յարում։ Եւ վճռական ճակատամարտում Զաբի շրջակայքում Վահրամը կոր ի գլուխ ջարդուեցաւ (591 ամառը)։ Նա փախաւ թիւրքերի մօտ, որոնք նրան պատուով ընդունեցին, բայց ուր քիչ ժամանակ յետոյ սպանուեցաւ։ Հոռոմները Խոսրովին Տիզբոն տարին։ Հռոմների և պարսիկների մինչև արդ խաղաղութիւնն ինքն ըստ ինքեան հասկանալի էր։ Հարկաւ հարկատուութիւնը դադարեց, սակայն սահմանները մնացին նոյնը ինչպէս էին կռուից առաջ, մանաւանդ նշանաւոր է այն, որ Մծբինը պարսիկներին թողնուեցաւ։

Բայց Խոսրովը դեռ իրեն այնքան տկար էր զգում, որ կայսրից 1000 հոռոմ զինուոր խնդրեց իբրև թիկնապահ։ Նրա առաջին մտադրութիւնն էր բոլոր վտանգաւոր մարդկանցից ազատուել, մանաւանդ նրանցից, որոնք իւր հօրը գահավէժ էին արել և իրեն գահ բարձրացրել։ Այսպէս սպանել տուաւ իւր քեռի Բինդոյէին։ Բայց սրա եղբայր Վստամին չը կարողացաւ ձեռք ձգել։ Սա տեսնելով որ իւր մահը վճռուած է, Վահրամի օրինակին հետեւեց և Մարաստանում թագաւորի տիտղոս առաւ

և իւր անունով դրամներ կտրեց։ Սա էլ Հնագոյն ցեղից էր, սակայն չկարողացաւ օրինաւորութեան Հեղինակութիւն ստանալ։ Ինչպէս երևում է, նա Վահրամի զօրքերի մնացորդների վրայ յենուեցաւ և միաբանեց Թիւրքերի և Դէլամիտների հետ։ Գրեթէ վեց տարի շարունակ ընդդիմացաւ նա Խոսրովի գնդերին և միայն դաւաճանութեամբ ընկաւ (հաւանօրէն 595-ի վերջին կամ 596-ի սկզբին)։[1]

Այս խառովութիւնները պէտք է երկարատև կռիւների պատճառած արևելքում և արևմուտքում արդէն իսկ բաւական տկարացած տէրութիւնը խիստ քայքայած լինէին։ Խոսրով Բ. սակայն այն իմաստուն միապետը չէր, որին կարօտ էր երկիրն այս հանգամանքներում։ Նա ամէնից շատ, եթէ ասելու լինինք, մի սովորական արևելեան իշխան էր։ Իսկապէս տկար լինելով՝ նա միանգամայն պարծենկոտ և երկչոտ էր, փարթամասիրութեան և շռայլութեան հետ ագահութիւն էլ ունէր։ Նրա մահուան ժամանակ արքունի գանձարանը, որ ինքը դատարկ էր ստացել, լիքն էր, մինչ երկիրը պատերազմներից աղքատացել էր։ Նրա վարմունքը իրեն թագաւորեցնողների վերաբերութեամբ թերևս կարելի է արդարացնել, եթէ հանգամանքներն աչքի առաջ ունենանք։ Պատերազմում նա երբէք նշանաւոր չէ եղել. Նրա յաղթանակները իւր զօրավարներին են

1. Սեբէոս. Գիրք Բ. Գլ. ԺԲ. եր. 94. եւ Գլ. ԺԵ. եր. 68։

Ժ. Թ.

պատկանում։ Հարկաւ նա երկար ժամանակ պաշտպանում էր քրիստոնեաներին, մինչև իսկ նրանց առաւելութիւն էր տալիս, նրանց համար եկեղեցիք էր շինում։ Սրա պատճառն այն էր, որ հոռոմների օժանդակութիւնը և մասամբ էլ, ինչպէս ինքն էր կարծում, ասորիների և արաբների գլխաւոր սրբի, ս. Սարգսի, օգնականութիւնը մեծ ազդեցութիւն էր գործել նրա վրայ, մասամբ և իւր սիրելի տիկնանց տիկին Շիրինի, որ մի ջերմեռանդն քրիստոնեայ էր, և այլոց, ինչպէս իր քրիստոնեայ անձնական բժիշկ Գաբրիէլի։ 1 Վերջին ժամանակ-

---

1. Շիրին ու Թագաւորը նոյն իսկ քրիստոնեաների երկու դաւանութեանց, միաբնակների եւ նեստորականների, վէճերի մէջ խառնուեցան։ Նրանք յիմարաբար պաշտպան կանգնեցին սակաւաթիւ եւ աւելի քիչ պարսկական միաբնակներին։ Այս յարաբերութիւնների մասին ունինք մի ժամանակակից եւ դեռ չհրատարակած ասորական յիշատակարանի մէջ հիանալի նկարագիրը։ Այդ յիշատակարանից ես օգտուել եմ շնորհիւ Դր. Կլայնի, Էուալդէի Հուզի չովուհի։ Ծ. Հ.

Այս մասին եւ առհասարակ Խոսրով Բ.-ի պատմութեան համար առաջնակարգ աղբիւր է Սեբէոսը, որի բոլոր մանրամասն տեղեկութիւնները երեւի յայտնի չեն եղել հեղինակին։ Անշուշտ է, որ Սեբէոսի գերմ. թարգմանութիւնը այդ պատմագրի հեղինակութիւնը շատ պիտի բարձրացնէ գիտնական աշխարհում։ Մեր գրականութեան մէջ առհասարակ Սեբէոսի պատմութիւնը մի հազուագիւտ գանձ է իւր աղբիւրների ստուգութեամբ։ Պարսից եւ հայոց պատմութեան համար Սեբէոս առաջնակարգ աղբիւր է, որ ցարդ ըստ արժանւոյն չէ գնահատուած։ Ծ. Թ.

ները Խոսրովի առ քրիստոնեաներն ունեցած բարեհաճութիւնը հակառակի փոխուեցաւ։ Մեզ յայտնի է, որ նա բնաւորութեամբ բոլորովին վայրենի էր։

Սկսած այն ժամանակից, երբ մի ապստամբութեան շնորհիւ Մորիկ գահավէժ եղաւ, սպանուեցաւ և նրա տեղը կայսերական գահը նստաւ զզուելի Փոկասը (Նոյեմբ· 602), Խոսրովն իրեն պատերազմի մէջ էր համարում հռոմների հետ իբրև վրիժառու իւր «հայր» Մորիկի և պաշտպան նրա կարծեցեալ Թադէոս որդուն, որ իրեն էր ապաւինել։ Սրա վրայ աւելացաւ և այն, որ Եդեսիոյ հրամանատար Նարսէսը նրան Փոկասի ընդդէմ օգնութեան կանչեց։ Խոսրովը նախ հրամայեց բանտարկել այն դեսպաններին, որոնց Փոկասն ուղարկել էր իւր գահակալութիւնը Խոսրովին յայտնելու։ Պատերազմն սկսաւ հաւանօրէն 604-ին։ Քսան տարի շարունակ ասպատակեցին պարսից զօրքերը հռոմների երկիրն այնպէս, ինչպէս երբէք չէին արել. այն աստիճանի տէրութիւնը Փոկասի, Աւարների և այլ վայրենի ազգերի շնորհիւ քայքայուած էր։ Դարան առնելուս Խոսրովն ևս ներկայ էր (604),[1] ապա նա այլ ևս անձամբ չէր մասնակցում պատերազմներում։ Մի քանի տարուց յետոյ պարսից բանակները մտան Փոքր Ասիոյ խորքերը, նոյն իսկ մինչև Քաղկեդոն, Կ. Պոլսի դիմացը։ Բայց որ

1. Land. Anecd. syr. 1, 15.

պարսից տէրութեան զօրութիւնն այնքան էլ ամուր չէր, երևում է այս շրջանում (604-ի և 610-ի մէջ) տեղի ունեցած, ինքն ըստ ինքեան մի աննշան իրողութիւնից, այն է Դու Բարի ճակատամարտից. Խոսրովը Հիրայի թագաւորութիւնը վերջացրել էր և վերջին թագաւոր Նուըմանին սպանել էր տուել։ Այսու տէրութիւնն ազատուել էր ինքն ըստ ինքեան մի անյարմար աւատական իշխանութիւնից, սակայն աւելի դժուարացել էր այժմ անապատի վայրենի ցեղերի վրայ ազդեցութիւն գործելն և արգիլել նրանց ասպատակութիւնները մշակուած երկիրների վրայ։ Նուըմանի անկումից յետոյ Բեդուին Բէկր իբն Վայլի ցեղին յաջողել էր Դու Բարիում, Եփրատի մօտ, սակաւօրեայ ճանապարհով Տիզբոնից հեռու, արքունի մի զօրաբանակ, որ բաղկացած էր արաբներից և պարսիկ կանոնաւոր զօրքից, բոլորովին ջարդելու, և այն երկրին տիրանալու, որտեղից նրանց ուզում էին հանել։ Պարսիկների վրայ տարած այս յաղթանակը որ արաբական ազգային փառասիրութիւնը շատ մեծացրել է, բարձրացրեց մեծապէս նրանց անձնավստահութիւնը, և ապագայում Իսլամի յարձակման ժամանակ պարսից տէրութեան վրայ շատ զօրացրեց։

Պատերազմը հռոմների հետ յաջողութեամբ շարունակուեց դեռ ևս երկար, երբ արի Հերակլը Փոկասին գահավիժել էր արդէն (Հոկտ. 610)։ Սա զուր տեղը քանիցս խաղաղութիւն խնդրեց, նեղուելով ամէն կողմից։ Դամասկոսն առնուեցաւ 613-ին,

Այն կողմերը, ուր տէրութեան հիմնարկութեան օրուանից պարսիկները ոտք չէին կոխել, այնպէս աւերուեցաւ, որ հետքերը մինչև այսօր էլ անհամար աւերակների վրայ երևում են։ Երուսաղէմըն առնուեցաւ 614-ի յունուարին։ Ամբողջ Քրիստոնէութիւնը սոսկաց լսելով որ պատրիարքի հետ միասին Փրկչի «վեհ, կենսատու խաչն» էլ գերի են տարել պարսիկները։ Դրանից յետոյ առնուեցաւ Եգիպտոսը և Փոքր Ասիան մինչև Քաղկեդոն ասպատակուեցաւ։ Միայն 622-ին կարող եղաւ Հերակլը պարսիկների դէմ ելնելու։ Նա նաւով դիմեց Իսոսի ծովածոցը, այնտեղից մտաւ Հայաստան և պոնտական երկիրներն և առաջին անգամ կրկին յարգանք ազդեց թշնամուն հռովմէական զէնքի առաջ։ Արշաւանքի ծախքերի համար եկեղեցեաց գանձարաններից շատ դրամ առնուեցաւ։ Մարտի 15-ին 623 թ. ձեռնարկեց նա վերջապէս իւր մեծ արշաւանքը, որ նրան քանիցս պարսից երկրի խորքերը տարաւ։ Նրա գրեթէ արկածախնդրական թափառումները, որոնց միջոցին սովորաբար դէպի յետ հաղորդակցութիւն չէր ունենում և մեծ դժուարութիւնների պիտի հանդիպէր, զօրքին պաշար մատակարարելու համար, ցոյց են տալիս, որ նա մեծ զօրավար էր և մեծ քաղաքագէտ։ Հենց առաջին տարումը աւերեց պարսիկների ամենասուրբ սրբավայրերից մէկն, Գանձակի ատրուշանը, Ուրմիայի լճից ոչ հեռու. սա պատասխան էր Երուսաղէմի սրբապղծուելուն։ Մենք տեսնում ենք Հե-

րակլէն երբեմն Կովկասի մօտերը, երբեմն արևելեան Փոքր Ասիայում, երբեմն Միջագետքում, ոչ երբէք յաղթուած, յաճախ յաղթական, թերևս աւելի յաճախ էլ ճարպիկ շարժումներով զօրագոյն բանակներ խաբելիս և տկարացնելիս: Խոսրովը, որին կայսրը Գանձակում սարսափելի մերձեցել էր. Նրա ուշադրութիւնը մի կողմը քաշելու ուղարկեց իւր ամենից անուանի զօրավար Շահար Բարազին (Շահր Վարազ) մեծ զօրաբանակով դէպի Քաղկեդոն (626): Այդ մի վտանգաւոր ժամանակ էր Կ. Պօլսի համար. մի կողմում պարսիկներն էին, միւսում Աւարները (626 ամառը), իսկ կայսրը գրեթէ անհետ էր եղել խորին Ասիայում: Սակայն Աւարները շուտով յետ քաշուեցան (օգոստոսի սկզբին), որովհետև աննաւատորմ պարսիկները չկարողացան նրանց հետ Վոսփորի վրայով զինուորական միաբանութիւն հաստատել. Դրա փոխարէն Հերակլը Կովկասի հիւսիսից վայրենի խազարներին պարսից երկիրն արձակեց: Միայն 627-ին համարձակուեց նա տէրութեան բուն կեդրոնի վրայ յարձակուելու: Ճրագալուցի տօնը (628 յունուար 6.) կատարեց նա Դաստակերտում, որ 24 տարի Խոսրովի կանոնաւոր մայրաքաղաքն էր, Տիզբոնից միայն մերձաւորապէս երեք օրուան ճանապարհ հեռու: Թագաւորն երկիւղից փախել էր և ինքն ու իր կանանոցը ապահով էր զգացել՝ միայն երբ անցել էր Տիգրիսի կամուրջը Տիզբոնում: Հերակլը իւր հզօր արշաւանքը Կովկասից հարկաւ փոքրաթիւ գնդերով

էր առիլ և կարող չէր ջրանցքներով պաշտպանուած և խիստ ամրացած մայրաքաղաքի վրայ յարձակուել։ Այլ ընդհակառակն մինչև Թագաւորի մի մեծ բանակ կազմելը յետ քաշուեց, բայց էլի դէպի Թըշնամու հողը, դէպի Գանձակ, և այն էլ փետրուարին և մարտին շարունակ տեղացող ձիւնի տակ Քուրդստանի լեռնաշղթայի միջով, մի ձեռնարկութիւն, որի նմանը պատերազմական պատմութեան մէջ շատ քիչ կայ։

Այս միջոցին սակայն Տիզբոնում նշանաւոր իրողութիւն էր կատարուել։ Խոսրովը իւր բռնակալութեամբ և կռփումներով մեծամեծներին և հասարակ մարդկանց առհասարակ դառնացրել էր. Նրա վատօրէն փախուստը պատճառ էր դարձել իւր յարգանքը կորցնելու։ Դրա վրայ աւելացաւ և այն, որ նա Մարդանշահին, իւր սիրելի Շիրինի որդուն, յաջորդ էր նշանակել, անդրանիկ Կաւատ որդուն զրկելով, որովհետև Շիրինը, չնայելով իւր տարիքին և հազարաւոր այլ կանանց, դարձեալ իշխում էր նրա վրայ։ Կաւատն իւր միւս շատ եղբայրների հետ արգելուած էր մի ամրոցում։ Արդ մի քանիսը, դրանց մէջ և մի քրիստոնեայ Շամաթայ անունով, որ որդի էր մեռած ընդհանուր կապալառու Եզդինի, ազատեցին Կաւատին բանտից և թագաւոր հրատարակեցին (25-ին փետր. 628)։ Խոսրովը լքեալ ամէնքից՝ դուրս հանուեցաւ իւր թագստեան տեղից, բանտարկուեց և մի քանի օրից սպանուեց (29 փետ. 628)։

Այսպէս անգթօրէն և թշուառ կերպիւ ընկաւ այն մարդը, որի բանակները գրեթէ Աքեմենեան տէրութեան սահմաններին տիրել էին։ Ոչ մի ձեռք չբարձրացաւ նրան պաշտպանելու և նրա համար վրէժխնդիր լինելու։ Մանաւանդ քրիստոնեաները, որ բոլոր միւս բաները մի կողմը թողնելով խաչի գերուելուն համար խորը խոցուած էին, ցնծութեան աղաղակներով ընդունեցին հայրասպան Կաւատին, որի գահ բարձրանալու ժամանակ իրենցից մէկը մեծ դեր էր խաղացել։

Առաջին բանը, որ Կաւատ Բ. Շէրոյէն իւր հօրն սպանելուց յետոյ արաւ, էր իւր բոլոր եղբայրների սպանումն (հաւանօրէն 18),* իսկ երկրորդը՝ որ կայսեր մօտ մարդ ուղարկեց խաղաղութիւն աղերսելով։ Անմիջապէս մի զինադադար հաստատուեցաւ, բայց ոչ խաղաղութիւն։ Հերակլը չէր շտապում խաղաղութիւն անելու, որովհետև իրերի վիճակը մասամբ իւիք նրանից էր կախուած։ Բոլոր պարսիկ զնդերն հրաման ստացան հռոմների երկրներից դուրս գալու։ Ինչպէս երևում է, Հերակլն այս ձևով կրկին ձեռք բերուած երկրներից մի քանիսի, մանաւանդ Միջագետքի, վիճակը մասամբ կարգի է բերել։ Ասորիք հասնելով լսեց, որ Կաւատ Շէրոյէն արդէն մեռել է։ Խեղճը հազիւ կէս տարի էր թագաւորել։ Սրա կառավարութիւնը նշանաւոր եղաւ մի սոսկալի ժանտախտով։

* Սեբէոս Գիրք. Գ. Գլ. ԻԸ. «.... եւ սպանին զամենեսեան ի միում ժամու արս ԺԸ»: Ծ. Թ.

Երկրի զօրաւորները նրա փոխանակ Թագաւոր կարգեցին նրա որդի Արտաշիր Գ.-ին, որ մի եօթն-ամեայ մանուկ էր։ Արդ սկսաւ մի անասելի շփոթութեան ժամանակ, երբ գահի վրայի մանուկներն ու կանայք իբրև պատրուակ էին ծառայում միմեանց դէմ մաքառող մեծամեծների համար։ Արտաշրի Թագաւորութեան միջոցին Հերակլը մեծահանդէս կերպիւ կրկին կանգնեց Երուսաղէմում ս. խաչը, որ Տիզբոնից ուղարկել էին նրան նեստորական եկեղեցու գլխաւորներից մէկի ձեռքով։ Դեռ ևս մինչև այժմ «Խաչվերացի» տօնը յիշեցնում է այդ հանդիսի օրը, 14-ին սեպտեմբերի (629-ին)։

Տիզբոնի կառավարութիւնն անզօր էր։ Խազիրներն ասպատակելով արշաւում էին տէրութեան վրայ։ Թերևս այդ միջոցներին էր, որ Խոսրովը, * Կաւատի որդին, Որմիզդ Դ-ի Թոռն, որ Թիւրքերի մօտ էր մեծացել, նախ Խորասանում փորձ արաւ իւր գահը կանգնելու։ Նրան արդէն մի քանի ամսից յետոյ սպանեցին։

Արդ, զօրաւորագոյն մէկը ձեռք մեկնեց դէպի Թագը. դա էր յաղթութիւններով պսակուած Շահրվարազը։ Մի տեսակցութեան միջոցին Կապադովկիոյ Արաբիսոսում (յունիս 629) պէտք է նա Հերակլի հաճութիւնն առած լինի այդ մասին։ ** Սրա համար ձեռնտու էր Թշնամի տէրութեան ներքին

---

* Տես Սեբէոս Գիրք Գ. Գլ. ԻԸ «Խոսրով ումն յազգէ Սասանայ։

** Համմտ. Սեբէոս Գիրք Գլ. ԻԸ.։ Ժ. Թ.

խռովութիւններին նպաստելով՝ ըստ կարելւոյն թուլացնել։ Շահրվարազը սակաւաթիւ գնդերով Տիզբոն հասաւ. տէրութեան յայտնի պաշտպանն առաւ իւր թագաւորների քաղաքը մի քանի մեծամեծների դաւաճանութեամբ։ Քաղաքը յափշտակութեան, կոտորածի և ամէն տեսակ սարսափների մատնուեցաւ, Արտաշիր մանուկն ապրիլի 27-ին 630 թ. սպանուեցաւ։ Սակայն արդէն յունիսի 9-ին ընկաւ Շահրվարազն իւր բարձակիցների նախանձի և օրինապահական զգտման շնորհիւ։ Նրա դին փողոցներով քաշ տրուեցաւ, և աւանդութիւնը կոպիտ հեգնութեամբ է խօսում այն մարդու մասին, որ կամենում էր թագաւոր լինել և չէր կարող լինել, որովհետև օրինական արքունի տանից չէր։

Արդ գահի վրայ բարձրացրին մի կին, Բորան անունով, Խոսրով Բ-ի դուստրը։ Ինչպէս երևում է սա կնքեց վերջապէս Հերակլի հետ խաղաղութեան դաշն ձևական կերպով. Այս դաշինքի պայմաններն անգամ ծանօթ չեն մեզ։ Հաւանօրէն Մօրիկի խաղաղութեան դաշն պարզապէս հաստատուեցաւ։ Ցամենայն դէպս Մծբինը մնաց պարսից ձեռքը։

Բորանը կառավարեց մօտաւորապէս մինչև 631 թուի աշունքը։ Նրան յաջորդեց Տիզբոնում,

1. Սեբէոս Գիրք Գ. գլ. ԻԸ. «ԲՈՐ» է կոչում այս թագուհուն, որ Խոսրովի աղջիկն էր և Խոռեամի կամ Շահրվարազի կինը։

ծ. թ.

հաւանօրէն մի Պերոզ արքայազնի միջանկեալ իշխանութիւնից յետոյ, իր քոյր Ազարմիդուխտը:[1] Սպանուած Շահրվարազի գնդերն ապստամբեցին Մծբնում և թագաւոր հրատարակեցին Որմիզդ Ե-ին, Խոսրով Բ-ի թոռներից մէկին, որ այդ միջոցներին (631 և 632 թուականներին) այն կողմերումն էր գտնուում: Ազարմիդուխտը գահավէժ եղաւ Ռուստէմի ձեռքով, Խորասանի ժառանգական արքունի զօրաւոր սպարապետի, որի հօրը թագուհին սպանել էր տուել: Այս շփոթութեան ժամանակի մասին եղած շփոթ տեղեկութիւններից չենք կարողանում ստուգապէս որոշել, թէ ո՞վք այդ ժամանակ թէ մայրաքաղաքում և թէ գաւառներում թագաւոր կամ թեկնածու եղան և արդեօք ո՞ր ժամանակ և կամ գոնէ ո՞րպիսի յաջորդութեամբ էին այդ թագաւորների և թեկնածուների «կառավարութիւնները»:

Ազարմիդուխտից յետոյ յամենայն դէպս Տիզբոնում մի առ ժամանակ թագաւոր է համարուել ոմն Ֆէրրուխզադ (կամ Խորրէզադ) Խոսրով,

---

1. Սեբէոս ibidem. «Եւ կալաւ բամբիշն (Բ ք ո ր ն կամ Բ ո ր ա ն ն) զթագաւորութիւնն ամս Բ. եւ մեռաւ: Ցետ սորա ԽՈՍՐՈՎ ոմն յազգէ Սասանայ: Եւ յետ սորա ԱԶԱՐՄԻԴՈՒԽՏ դուստր Խոսրովայ: Միջանկեալ իշխանի անունը Սեբէոս Խոսրով է կոչում, որի մասին ակնարկում է, որ թէեւ Սասանի ցեղից էր, սակայն ոչ պայազատ:

Ժ. Թ.

ըստ ոմանց Խոսրով Բ-ի կոտորածից ազատուած միակ որդին, որ հաւանօրէն մի մանուկ էր [1]։ Պերսիս նահանգում այլ մեծամեծները թագաւորեցրին մի ուրիշ մանկան, Յազկերտ Գ-ին, Խոսրով Բ-ի թոռան և Շահրիեարի որդուն. սրան թագաւոր պսակեցին Արտաշրի ատրուշանում (632 թուականի երկրորդ կիսում կամ 633 թուի առաջին կիսում)։ Շուտով ընդունուեցաւ նա մայրաքաղաքումն և, ուր Խոսրովին սպանել էին արդէն։ Միւս նահանգների դիմադրութիւնն երևում է տևական չէ եղել։

Այժմ կարելի էր սարսափելի կերպով խախտուած տէրութեան իսկական վերակազմութեան մասին երազել։ Արդ միայնակ թագաւորում էր Խոսրովի թոռներից մէկը, որ հայրասպան Շէրոյէից չէր ծագում։ Նա իւր արքայական օծումն ընդունել էր Ստահրում, Սասանեան հարստութեան հայրենիքում, նրան զօրավիգն էր հզօր Ռուստէմը։ Ինչպէս երևում է մի իսկական բարգաւաճումն էլ սկսում է։ Սակայն ժամանակամիջոցը շատ կարճ էր։ Որովհետև արդէն տէրութեան դռները բաղխում էր մի թշնամի, որ աւելի վտանգաւոր պիտի լինէր քան թէ Յուլիանոսն ու Հերակլն էին։ Որ Եմենն ու տէրութեան մի քանի կալուածները հիւսիս-արևելեան Արաբիայում մոսլեմները խլել էին, հազիւ թէ Տիզբոնում ներքին շփոթութիւնների

1. Սրա դրամներից մեր ձեռքն հասած միակ դրամի վրայ ինքն անմօրուս է նկարուած։

պատճառաւ նկատած լինէին։ Բայց շուտով մոսլեմները մերձեցել էին արդէն։ Դու Քարի ճակատամարտից յետոյ Բէկր բեդուինները երբեմն արքունի երկրներն էին ասպատակել։ Մութաննան, նրանց յանդգնագոյն առաջնորդներից մին, իսլամական կրօնն ընդունեց, և այսպիսի թիկունք ունենալուց յետոյ, նրա յարձակումներն աւելի յանդուգն դարձան։ Արդ՝ Հզօր Խալիդը, Արաբիայում ապստամբութիւններն ընկճելուց յետոյ, դուրս եկաւ (երևի 633 ին) սակաւաձեռն բանակով Եփրատի Ներքին ափունքի կողմերը, այս բեդուինների ձեռնարկութիւններին առաջնորդելու համար։ Պարսից կուսակից արաբներն ու արքունի գնդերը փոքր ճակատամարտներում յաղթուեցան. շուտով սահմանի վրայի քանի մի դղեակներ արդէն մոսլեմների ձեռքն անցան [1]։ Ներքին Եփրատի արևմտեան կողմերի բնակիչներն, ամէնքն էլ քրիստոնեայք, որ Եփրատի և Տիգրիսի կողմերի բոլոր քրիստոնէից պէս քիչ հաւատարմութիւն էին տածում դէպի պարսից տէրութիւնը, հպատակեցին յաղթողներին և մինչև իսկ պարտաւորութիւն յանձն առան լրտեսութիւն անելու։ Արաբացիք

---

1. Արաբական աշխարհակալութեան նկարագիրն անում եմ գլխաւորաբար համաձայն Բելաձորիի, որի համառօտ տեղեկութիւններն ստոյգ քննութիւնից յետոյ աւելի ճշմարտանում են, քան թէ Տաբարիի եւ նրան համառօտողների երկարաբան պատմութիւնը։ Այս անցքերի ժամանակագրութիւնը սակայն մասամբ կասկածելի է մնում։

անցել էին արդէն Եփրատի միւս ափն՝ ու կողոպտել տօնավաճառի միջոցին Բաղդադը, որ այդ ժամանակ մի գիւղ էր, և այլ աւաններ Տիգրիսի աջ ափին։ Բայց Խալիդը շուտով (634 ի ամառուան սկզբին) հրաման ստացաւ Ասորիքի վրայ յարձակուելու, որովհետև այդ երկրի տիրապետութիւնն ամիրապետին առ այժմ աւելի կարևոր էր։ Նրա յաջորդ, Աբու Օբայիդ Թայիֆեցին, թէպէտ իւր հետ սակաւաձեռն գունդ բերաւ, բայց երբ վերջապէս պարսկական կանոնաւոր զօրք եկաւ, մուլեմները «կամրջի ճակատամարտում» Եփրատի մօտ բոլորովին ջարդուեցան, չընայելով իրենց դիւցազնական արիութեան (26 նոյեմ. 634)։ Դժուարութեամբ միայն կարողացաւ Մութաննան, զօրավարի ընկնելուց յետոյ, բանակի մնացորդներն ազատել, Նոր տիրապետութիւնների մեծագոյն մասն այսպիսով կորաւ։ Սակաւիկ մի դանդաղելուց յետոյ Օմարը (խալիֆ սկսած 23 օգ. 634) վճռեց աւելի մեծ գնդեր ուղարկելու դէպի Իրաք։ Նա դիմեց արաբների ագահութեան և բարեպաշտութեան միանգամայն. հրաւիրեց իւր ազգին Խոսրովի գանձերն և դրախտի վայելքները ձեռք բերելու։ Ահա առաջին անգամ ջարդեցին արաբները մի մեծ պարսկական զօրաբանակ (Բուվայիբի մօտ 635-ին կամ 636-ին). Միհրանեան տան շառաւիղ պարսիկ զօրավարն ընկաւ ճակատամարտում։ Արաբները կրկին տէր դարձան Եփրատի աջ ափի երկրներին։ Մահմէտ մարգարէի ամենաառաջին հետևողներից Աբու

Վակկայի որդի Սադ եղաւ արաբների առաջնորդը·
սա մի եռանդուն և շրջահայեաց մարդ էր։ Տիզբո-
նի աւագանին այժմ ճանաչեցին տէրութեան սպառ-
նացող վտանգն։ Եարմուկի ճակատամարտի (20 օգ.
636), որ Պարսկաստանին յաղթող Հերակլին ամ-
բողջ Ասորիքն էր արժեցել, համբաւն առնելով
պարսիկների սարսափն աւելի ևս կը սաստկանար։ Արդ
Ռուստէմն ինքն անցաւ մի մեծ զօրաբանակի գլու-
խը։ Ի նշան այս կռուի մեծ լրջութեան, նա ա-
ռաւ իւր հետ շատ հին համարուող և սուրբ դրօ-
շը տէրութեան (դիրաֆշի կաւիջան)։ Պարսկական
սովորութեամբ նրա բանակի մէջ կային և փղեր։
Հէնց պարսիկ առաջաւոր գնդերի հասնելուն պէս
Սադը թողեց իւր դիրքն և դարձաւ դէպի յետ Կա-
դիսիջայ, որ գտնուում է անապատի եզերքում.
(Հիրայից հարաւ կամ հարաւ արևմուտք)։ Ամիսներ
շարունակ երկու զօրաբանակները միմեանցից որոշ
հեռաւորութեան վրայ բանակեցին։ Անկասկած ա-
րաբական զօրքերն աւելի սակաւաթիւ էին, քան թէ
պարսկականը։ Արաբները չէին կարող այնտեղ մի
մեծ զօրագունդ կերակրել, նրանք ստիպուած էին
ծոհանալ իրենց ասպատակներով, որ անում էին դէ-
պի մշակուած երկրներն ու խալիֆայի Մեդինայից
ուղարկած օժանդակութեամբ։ Վերջապէս սկսաւ
Քադիսիջայի (Kâdisîja) (636-ի կամ 637-ի վերջին)
մեծ և մի քանի օր տևող ճակատամարտը։ Սադը հի-
ւանդ էր, բայց էլի ճակատն ինքն էր կառավարում։

Պարսիկները մեծ մասով աւելի լաւ էին սպա-

ռազինուած քան արաբացիք, որոնց պատերազմական եռանդը սակայն վերջին ծայր բորբոքուած էր։ Փղերը սկզբում սարսափեցրին արաբներին սաստիկ կերպով, բայց երբ նրանք դարձեալ արիութեամբ յառաջ նետուեցան, երևում է, որ փղերն իրենց ընթացքի ուղղութիւնը կորցնելով պատճառ են եղել պարսիկ բանակի շփոթութեան. Պարսիկների մեծագոյն մասն ինչպէս երևում է իւր հին սովորութեամբ վատօրէն է վարուել, բայց արաբների գործն էլ շատ դժուար էր, մինչև թշնամիք յաղթուեցան, Ռուստեմն ընկաւ և տէրութեան դրօշը ձեռք ձգեցին։

Քադիսիջայի ճակատամարտը գլխաւորաբար վճռեց Տիգրիսի շրջակայքի երկրների վիճակը։ Թէպէտ և դեռ տեղի ունեցան քանի մի կռիւներ, մասամբ հին Բաբիլոնի[1] ընդարձակ սահմաններում, բայց քիչ յետոյ հասան արաբներն արդէն Սելևկիա, առան քաղաքն երկար պաշարումից յետոյ, անցան Տիգրիսի սրընթաց հոսանքի վրայով միւս կողմն և մտան Տիզբոն։ Երիտասարդ Յազկերտ թագաւորը նախապէս փախել էր Հոլվան (Բաբիլոնիայի և Մարաստանի սահմանի վրայ), Ջալուլայի մօտ, որ գտնուում է Հոլվանի ճանապարհի վրայ, արաբները կրկին յաղթեցին պարսիկներին, որոնց առաջ-

---

1. Բիրսի (Borsippa) մերձակայքում։ Ծ. Հ.
Համմ. Պարսից տէրութեան վախճանին վերաբերեալ Սեբէոսի ստուգապատում աւանդածները, Գիրք Գ. Գլ. Լ. եր. 168, 169. Գլ. ԼԵ. եր. 214. 215։ Ծ. Թ.

նորդում էր Ռուստէմի Խոռէզադ[1] եղբայրը, Յազկերտը փախաւ Պարսկաստանի խորքը։ Այդ միջոցներին այլ արաբներ միացեալ գետերի բերանի շրջակայ երկրներին տիրել էին և այնտեղից մտել Սուզիանա[2] (Սագաստան)։ Մի բանիբուն և հաստատուն առաջնորդութիւն եթէ ունեցած լինէին պարսիկները, թերևս կարողանային իսկական իրանական երկիրն ազատել։ Իւր մեծ եռանդի հակառակ զգուշաւոր Օմարն այստեղ վախենում էր, որ արաբները կարող են շատ հեռացած լինել, և չէր կամենում նախ ամենևին հրաման տալ, որ յառաջ մղուեն դէպի Իրանի բարձրաւանդակը։ Վերջապէս տուաւ նա այդ հրամանը։ Նեհաւէնդի մօտ, որ Բաբելոնից դէպի Եկբատան տանող հին պողոտայից քիչ դէպի հարաւ է գտնուում, մի մեծ պարսիկ զօրաբանակ էր ժողովուել։ Այստեղ մի մեծ ճակատամարտ տեղի ունեցաւ (640, 641 կամ 642), ուր արաբացիք նախ Նուամանի և ապա, նրա ընկնելուց յետոյ, Մեկկացի Հուդհայֆայի առաջնորդութեամբ փառաւոր յաղթութիւն տարան։ Նեհաւէնդի յաղթութիւնը մոսլեմները կոչում են «յաղթութիւն յաղթութեանց»։ Սրանով պարսից տէրութիւնը բոլորովին ջախջախուած էր։ Իրաւ է արաբացիք դեռ շատ պէտք է մաքառէին, մինչև այդ ընդարձակ

---

1. Սեբէոսը դրան կոչում է «Խոռոխազատ»։

2. Տես այս մասին ականատեսների վկայութիւնը Սեբէոսի գիրք Դ. Գլ. Լ. եր. 17 ։

*

միապետութեան բոլոր երկրներին տիրելը, բայց դրանք մնայուն կալուներ էին, որոնց վերջնական ելքը կասկածելի չէր կարող լինել, որովհետև թշնամիք այլևս մեծ միաբանութիւն չունէին։ Մի քանի քաղաքներ և երկրներ արաբացիք մի քանի անգամ նուաճեցին, որովհետև կրկին և կրկին ապըստամբում էին։ Ամենից խիստ ընդդիմութեան երևում է թէ իսկական Պերսիսումն են հանդիպել արաբացիք, մանաւանդ Ստահրի (Պերսեպօլիս) մերձակայքում, ուր Սասանեան տէրութիւնը սկիզբն էր առել և ուր կենդրոնն էր նրա կրօնի։ Մի քանի մեծ և փոքր տեղական իշխաններ խաղաղութեամբ վերջացրի արաբացիների հետ։ Սրանք ամէնքն էլ ներկայացան իբրև անկախ իշխաններ։

Յազկերտ թագաւորը սակայն ողբալի կեանք էր վարում։ Իւր կեանքը թագի և տէրութեան համար զոհելու սիրտ չարաւ նա։ Մի կուսակալի մօտից փախչում էր միւսի մօտ։ Ամենից երկար թուում է թէ մնացած պիտի լինի Ստահրումը, որտեղից և դուրս էր եկել։ Արքայական շքեղութեան արտաքին փառքը թողնում էին, որ նա վայելէր, դըրամներ էին կոխում նրա անունով, բայց հէնց որ ծանրանում էր վրաները, իսկոյն ճանապարհ էին ձգում։ Վերջապէս փախաւ նա իւր տէրութեան վերջին հիւսիս—արևելեան սահմանը, և այնտեղ, Մերվի մօտերքը, թշուառ կերպիւ սպանուեց։ Նրա 651-ին կամ 652-ին տեղի ունեցած մահուան հանհամանքները ստոյգ յայտնի չեն, բայց այսու ամե-

նայնիւ ստոյգ է երեւում՝ որ Մերվի կուսակալ Մա-հոյէն խառն է եղել այդ գործում։

Այն հանգամանքները՝ որոնց ներքոյ կործան-ուեցան Աքեմենեան և Սասանեան տէրութիւնները՝ ստիպում են մեզ խորհրդածելու դրանց նմանու-թեան վրայ՝ չնայելով որ այդ նմանութիւնը առ երեւոյթս դիպուածական է՝ բայց հիմնուած է ներ-քին էութեան համաձայնութեան վրայ։

Ինչպէս Գրանիկոսի ճակատամարտն այն ան-գամին թշնամու վտանգաւորութիւնը ցոյց տուաւ՝ Իսսոսում Թագաւորը արեւմտեան գաւառները կոր-ցրեց՝ Գաւգամելայի կռիւը տէրութիւնը բաժան բաժան արաւ՝ չնայելով՝ որ այդու յաղթողը տէ-րութեան երկրներին ամենին էլ տէր չեղաւ՝ նոյնն եղաւ գրեթէ և 1000 տարուց յետոյ Բուվայրի՝ Քադիսիջայի և Նէհաւէնդի ճակատամարտներից յետոյ։ Եւ ինչպէս փախստական Դարեհը տէրու-թեան հիւսիս-արեւելքում ոչ թէ թշնամեաց՝ այլ դաւաճան մեծամեծների ձեռքով մեռաւ՝ այսպէս էլ Ցազկերտը՝ որ ինչպէս և Դարեհը՝ դիւցազուն չէր։

Պարսիկ աւագանին արաբների վերաբերու-թեամբ այնքան սակաւ հայրենասիրութիւն և այն-քան անպարտաճանաչութիւն ցոյց չտուաւ՝ որչափ Աղէքսանդրի վերաբերութեամբ. արդէն կրօնների խիստ և գիտակցական հակադրութիւնը և արաբ-ների բիրտ բարքը արգելում էին նրանց հետ միա-բանելու. սակայն այդտեղ էլ չպակասեցան առա-

ջաւոր դաւաճաններ և դասալիքներ թէ բարձր և թէ ցածր ազնուականներից։ Պարսից միապետու-թեան վերջնական նուաճումն արաբացիներին աւե-լի ժամանակ նստաւ, քան թէ մեծ Մակեդոնացուն, դրա փոխարէն սրանց տիրապետութիւնն էլ աւելի տեւական էր. Հելլենականութիւնը պարսիկ-ների վրայ միայն արտաքուստ ազդեց, մինչ արա-բական կրօնն և արաբական բարքը նրանց մէջ ներս թափանցեց։

Սասանեան տէրութեան մի փոքրիկ հատուած սակայն երկար ժամանակ մնաց։ Պետութեան ժա-ռանգական սպարապետները (սպահպատ, իսպէհ-բեդ) Խորասանում, Կարինեան տնից, քաշուեցան Տաբերիստանի (Մազանդարանի) լեռները և իշխե-ցին այնտեղ դեռ 100 տարի, երբեմնապէս ստիպ-ուեցան սակայն խալիֆներին հարկ վճարելու։ Սրանք զրադաշտական կրօնին հաւատարիմ մնա-ցին։ Այն տարեթիւը, որ նոքա գործ են դնում իրենց դրամների վրայ, \շատ հաւանականութեամբ սկըս-ւում է Յազկերտի մահուան տարուանից. այսպէս ուրեմն սրանք ըստ երեւոյթին իրենց ուղղակի յա-ջորդ են համարում Սասանեան Թագաւորների։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ Ա․

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑԱՆԿ
### ՍԱՍԱՆԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐԻ

| | ԹԱԳԱՒՈՐՆԵՐ․ | ՏԱՐԵԹԻՒ ԳԱՀԱԿԱԼՈՒԹԵԱՆ | ՏԱՐԵԹԻՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ |
|---|---|---|---|
| 1 | Արտաշիր Ա․ | Թագաւոր հրատարակեց իրեն 211\|12 Քրիստոսից յետոյ․ «արքայից արքայ» 224 « » Սկիզբն Սասանեան հարստութեան 226 « » | |
| 2 | Շապուհ Ա․ | Մարտի 20-ի 142 « » | 251—252․ տիրապետութեան Հայաստանի մինչեւ 261․ |
| 3 | Հորմիզդ կամ Որմիզդ Ա․ | Վերջ 272ի կամ սկիզբն 273-ի | |
| 4 | Բահրամ կամ Վռամ Ա․ | 274 Քրիստոսից յետոյ | |
| 5 | Բահրամ կամ Վռամ Բ․ | 277․ « » | |
| 6 | Բահրամ կամ Վռամ Գ․ Սագանշահ | 291\|2 « » | |
| 7 | Նարսեհ կամ Ներսեհ | 293 « » | 294—298․ Կրկին գրաւումն Հայաստանի։ |
| 8 | Հորմիզդ Բ․ | 303 « » | |
| 9 | Աղհարնարսեհ | սկիզբն 310 « « | |
| 10 | Շապուհ Բ․ | 310 « » | Հռովմ․ պատերազ- |

| | | | |
|---|---|---|---|
| | | | մներ 338—363, Արշակ Բ. մատնուեց Շապուհին։ Պապ 371. |
| 11 | Արտաշիր Բ. | 379 « » | |
| | Շապուհ Գ. | 384 « » | Խաղաղութեան կայսեր հետ։ |
| 12 | Բահրամ կամ Վռամ Դ. Քիրմանշահ | 389 « » | 390 Պարսիկներն եւ Յոյները բաժանեցին Հայաստանը։ |
| 13 | Եազդեգերդ կամ Յազկերտ Ա. | 399 « » | 480 Շապուհ արքայորդին թագ. Հայաստ. |
| 14 | Բահրամ Գոռ կամ Վռամ Ե. | 420 « » | Միհր—Ներսէհ զօրավարի երեւան գալը. 429 Հայոց թագաւորութեան բարձումն պարսից բաժանումն։ |
| 15 | Եազդեգերդ կամ Յազկերտ Բ. | 438\|439 Քս. յետոյ | 441 Թշնամութիւն եւ աջադրզն հռոմների հետ 442—449 պատերազմ ընդդէմ Քուշանաց, 450—451, ապստամբ Հայոց, պատերազմ Վարդանանց։ |

| | | | |
|---|---|---|---|
| 17 | Հորմիզդ կամ Որմիզդ Դ․ | 457 « » | |
| 18 | Պերոզ | 459 « » | 482—484՝ երկր․ կրօնական պատերազմ․ (Վահան Մամիկոնեան)։ |
| 19 | Բալաշ կամ Վաղարշ | 484 « » | 485 դաշն Նուարսակի․ մարզպ․ Վահանի։ |
| 20 | Կաւատ Ա․ (Ջամասպ)<br>Կաւատ Ա․ կրկին | 489 « »<br>496 « »<br>498 կամ 499 « » | 502 պարսկա-հռով-մէական կռիւների ըսկիզբն, խաղաղ 506, նորոգումն կռուի 518—531, հռոմ-ների յարձակ․ ի Հայս։ |
| 21 | Խոսրով Ա․ Անուշիրուան | 531 « » | 532 «յաւիտենական խաղաղութեան» դաշն։ 540—562 պատերազմ․ հռոմների հետ մասնակցութեամբ Հայոց։ 571 սպանումն Սուրէն պարսկի։ 575 Խոսրովի պատերազմները Հայաստանում։ 577 Բռնի գաղթականութիւն Հայոց ի Կիպրոս յունաց ձեռքով։ |

| | | | |
|---|---|---|---|
| 22 | Հորմիզդ կամ Որմիզդ Դ. | 579 « » | 589 Բահրամ Չոբինի արշաւանքն յԱղուանս։ |
| 23 | Խոսրով Բ. | 590 « » | 604—624 Խոսրովի պատերազմները հռոմների դէմ։ 623—628 Հերակլ կայսեր արշաւանքը Հայաստանի վերայով։ |
| | Պարուէզ (Բահրամ Չոբին Դ.) | 590 « » | |
| | (Բիստամ կամ Վշտամ) | 591—96 « » | |
| 24 | Կաւատ Բ. Շէրոյէ | 628 Քս. յետոյ | |
| 25 | Արտաշիր Գ. | 628 « » | |
| | (Խոսրով որդի Կաւատի) | 629 « » | |
| 26 | Շահրբարազ կամ Շահրվարազ | 629 » » | |
| 27 | Բորան կամ Բքոր | 630 « » | |
| | (Պերոզ) | 631 « » | |
| | (Ազարմիդուխտ | « » | |
| 28 | Հորմիզդ կամ Որմիզդ Դ. (Փէրրուխզադ | 632 « » | Արաբների առաջին արշաւանքն ի Հայս։ |
| 29 | Խոսրով Եազդիգերդ կամ Յազգերտ Գ. | 632 կամ 633 ճակատ Կատիսիյայի 637. Նէհավէնդի 642. մահ Յազկերտի 651 կամ 652։ | |